1916 № 15.—*Ապրիլի* 3 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *ռուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.* *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.* *Արտասահման՝* տարեկան 5 *ր.*, կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաարադեան հրապար.* № 7.
**Հեռախօս** № 29.

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆ
*ՄԱՀՈՒԱՆ ՅԻՍՈՒՆԱՄԵԱԿ*
(1866—1916)

## ՄԻՔԱՅԷԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆ

—

*Յիսուն տարի առաջ, 1866 թուի մարտի 31-ին, Սարատովի նահանգի Կամիշին անունով փոքրիկ ու խեղճ քաղաքում, թոքախտից վախճանուեց Միքայէլ Նալբանդեանը: Նա ծնուել էր 1830 թուին, հետեւաբար վախճանւում էր 36 տարեկան ծաղիկ հասակում: Մի փոքրիկ կեանք, եթէ չափենք երկարութիւնը: Բայց մի շատ մեծ կեանք, եթէ վերցնենք նրա բովանդակութիւնը:*

*Միքայէլ Նալբանդեանը մէկն էր այն սակաւաւոր ջահերից, որոնց փայլերից կազմուեց մեր, ռուսահայերիս վերածնութեան վաղ արշալոյսը: Խաւարի մէջ նստած մի անմխիթար ժողովուրդ էինք մենք, և մեր այդ ջահերը պայծառ փարոսներ հանդիսացան փրկութեան նաւահանգիստ որոնելու և գտնելու համար:*

*Վաղուց արդէն մեզ համար նուիրական հասկացողութեամբ և սրբազան պաշտամունք են դարձել այդ մեծ ռահվիրաները: Բայց դրանց մէջ առանձնակի տեղ, առանձնակի հմայքով է գծագրւում այն դէմքը, որի գերեզմանի վրայով անհա սահեց անցաւ անմահութեան առաջին կէս դարը:*

*Միքայէլ Նալբանդեանը Նոր-Նախիջեանի արհեստաւոր, կրթաւսահան Ուստա-Ղազարի որդին էր: Միջոցների պակասութիւնն էր պատճառ, որ Միքայէլը կանոնաւոր և սիստեմատիք կրթութիւն չը ստացաւ: Միակ դպրոցը, ուր նա կրթուել է, յայտնի Գաբրիէլ քահանայ Պատկանեանի (Գամառ-Քաթիպայի հօր) դպրոցն էր, ուր լաւ դրուած էր միմիայն հայոց լեզուի դասաւանդութիւնը: Եւ աւելին Ուստա Ղազարի համար հարկաւոր էլ չէր: Նա վճռել էր որդուն առևտրական դարձնել: Բայց որդին այնպէս սիրեց ուսումն ու գիրքը, որ դարձաւ հայոց եկեղեցու տիրացու,*

այնպիսի բաներ, որոնք Նալբանդեանի համբաւի վրայ ոչինչ չէին աւելացնում և որոնք առանձին ուշադրութեան արժանի էլ չը դառան։

Բանտից դուրս գալուց յետոյ, Նալբանդեանը 1865-ի ամառը անց կացրեց Պետրոգրադում, այդտեղի հմուտ բժիշկների օգնութեամբ իր հիւանդութեան դիմադրելու յուսով։ Սակայն ոչինչ չը կարողացան անել բժիշկները, միայն խորհուրդ տուին գնալ Սարատովի նահանգը և այնտեղ կումիս խմել։ Նալբանդեանը գնաց Կամիշին, բայց շարունակ կեանքի և մահուան մէջ էր գտնւում։ 1866 թ. մարտի 31-ին նա վախճանուեց։ Մարմինը տեղափոխուեց Նոր-Նախիջևան և թաղուեց մեծ հանդիսով։

Նրա գերեզմանը գտնւում է Սուրբ Խաչ վանքի բակում։ Յետոյ նրա կողքին թաղուեց նրա գաղափարական ընկեր Ռափայէլ Պատկանեանը։ Երկու նշանաւոր Նախիջևանցիների գերեզմանների վրայ այսօր դրուած են գեղեցիկ արձաններ։

---

Մօտ 16 տարեկան հասակից էր որ Նալբանդեանը մտաւ գործունէութեան ասպարէզ, ուրեմն նա գործեց համարեա 20 տարի։ Գործեց կրակոտ թափով, երիտասարդ տաղանդի ամբողջ խանդավառութեամբ, լցուած իր ազգին ծառայելու սրբազան և բիւրեղի պէս մաքուր ոգևորութեամբ։ Նրա փայլուն ընդունակութիւնը աւելի մեծ արդիւնքներ պիտի տային, բայց նա մահի պէս արագ այրուեց վերջացաւ, թողնելով մի փայլուն լուսաւոր յիշատակ, որ օրհնուած է և դեռ պիտի երկար օրհնուի ապագայ սերունդների բերանում։

Լ.

---

## ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ԶԻՆՈՒՈՐԸ

*(Միքայէլ Նալբանդեանի յիշատակին)*

*«Ազատութիւն», ինձ կրկնեց*
*Ճակատագիրը վերևից.*
*«Ազատութեան դու զինուոր*
*Կամիս գրուիլ այս օրից։*
*Ո՜հ, փշոտ է ճանապարհդ,*
*Քեզ շատ փորձանք կը սպասէ.*
*Ազատութիւն սիրողին,*
*Այս աշխարհը խիստ նեղ է»։*

*Կամս էմմանուէլ*

I

Հայութեան ողբերգական վիճակը չի կարող տրամադրել մեզ շքեղ հանդէսներ կամ յոբելեաններ կատարելու, բայց մի ներքին ոյժ, կարծեմ, ստիպում է մեզ օգտուել ամեն առիթից յիշելու մեր կեանքի անձնազոհ ուսուցիչներին, մեզ ոգևորող հեղինակներին, ազգի լուսաւոր ապագան աւետողներին։

Յիշել և յարգել նրանց յիշատակը—ներկայ հանգամանքներում Միքայէլ Նալբանդեանինը, Ազատութեան այդ կամաւոր զինուորի մահուան յիսնամեակը—ունի առանձին խորհրդաւոր նշանակութիւն։ Ազգային ազատութեան նախօրեակին մենք կանգնած ենք այն մարդու յիշատակի առաջ, որ իր ամբողջ գոյութեամբ, իր կեանքի և գործունէութեան բոլոր կողմերով մի մարմնացում էր կուռքի յանուն այդ ազատութեան, յանուն ճշմարտութեան և յառաջադիմութեան։ Պէտք է քայլ առ քայլ հետևել նրա կեանքին, պէտք է ուշի ուշով կարդալ նրա յօդուածները «Հիւսիսափայլում» և այլուր, պէտք է ծանօթանալ նրա և նրա հայ և օտար ընկերների ու ծանօթների նամակներին ու թողած յիշողութիւններին, որպէսզի չափազանցութիւն չհամարուի այն կարծիքը, թէ Միքայէլ Նալբանդեանը մի բացառիկ երևոյթ էր այն ժամանակուայ մեր իրականութեան մէջ, մի բազմակողմանի տաղանդ, մի անսպառ եռանդ, զարմանալի ոգևորութեամբ լի տեմպերամենտ, ազնիւ սիրտ և անկեղծութիւն։ Եւ ինչով է ամենից աւելի գրաւում մեզ Նալբանդեանը, այդ՝ նրա խօսքի ու գործի մէջ եղած ներդաշնակութիւնն է։ Նա ոչ միայն արծարծում էր գաղափարներ և տալիս էր լոզունգներ, այլ և կռւում էր նրանց համար և անձամբ գործադրում կեանքի մէջ։ Նրա գործունէութեան մէջ դժուար է բաժանել հրապարակախօսին հասարակական գործչից, բանաստեղծին—ազգային տրիբունից։ Գործունէութեան այդ բոլոր կողմերը սերտ կապուած էին միմեանց հետ մի ընդհանուր նպատակով—ազգային վերածնութեան գաղափարով։

Երբ Մ. Նալբանդեանը ասում է՝ *) «Մենք ազատակամ նուիրեցինք մեզ հասարակ ժողովրդի իրաւունքը պաշտպանելու... Այն խեղճ Հայը, այն հարստահարուած, ողորմելի, աղքատ, մերկ և քաղցած Հայը, ոչ միայն ճնշուած օտարներից և բարբարոսներից, այլ և իւր հարուստներից, իւր հոգևորներից և կիսագրագէտ, ուսումնական կամ փիլիսոփայ աստուածներից, ահա այն Հայն ամենայն արդարացի իրաւունքով գրաւում է մեր ուշադրութիւնը և նրան դարձեալ, առանց վայրկենական երկմտութեան, նուիրեցինք մեր բոլոր կարողութիւնը։ Պաշտպանել այն հայի առաթուր կոխուած իրաւունքը է մեր կեանքի բուն խորհուրդը և նպատակը։ Եւ այս նպատակին հասնելու համար չէ պիտոյ ընկրկենք ոչ բանդի և ոչ աքսորի առջև, ոչ միայն բանիւ և գրչով,—այլ և զէնքով և արիւնով, եթէ մի օր արժանի լինենք զէնք առնել մեր ձեռքը և մինչև այժմ քարոզած ազատութեանը նուիրել և սրբել մեր արիւնով։

Ահաւասիկ մեր դաւանութիւնը, որի մէջ տեսնում ենք ազգի փրկութիւնը...»։

Նրա բերնում այս միայն գեղեցիկ բառեր չեն, այլ բովանդակալից ծրագիր, որ իրագործուել է, մի երգում, որը կատարուել է։

Հասարակ ժողովրդի շահերն էր պաշտպանում նա, երբ կռւում էր Խալիբեանի և նրա կուսակից հարստահարիչների դէմ, երբ կռւում էր Զամուռճեանի կամ Չէրքեզեանի «օբսկուրանտիզմի» դէմ. երբ կռիւ էր հրապարակել Մխիթարեաններին, Այվազեան եպիսկոպոսին, Մոսկուայի այլասեռուած հարուստներին, Պոլսի ամիրաներին, տգէտ ուսուցիչներին, հրապարակախօսներին ու հոգևորականներին, վերջապէս բռնակալական ուժերին և թրքաց խժդժութիւններին։

Եւ այդ հասարակ ժողովրդի—խմա ազգի—շահերը պաշտպանելով նա յանձն է առնում ամեն տեսակ զրկանք և զոհողութիւն. նրան հալածում են և աշխարհիկ և հոգևոր իշխանութիւնները. նրան հանգիստ չեն թողնում ոչ Նախիջևանում և ոչ Մոսկուայում։ Վերջապէս նրան ձերբակալում են, մեղաւոր են ճանաչում, որ ռուս յեղափոխականների հետ յարաբերութիւններ է ունեցել **) և երեք տարի բանտում փտեցնելուց յետոյ աքսորում են Կամիշին, ոստիկանութեան հսկողութեան ենթարկելով։

Այստեղ և կնքում է նա իր մահկանացուն ուղիղ յիսուն տարի սրանից առաջ։

Աւելի փառաւոր կերպով իրագործել իր ծրագիրը նա չէր կարող՝ քարոզած ազատութիւնը ճիշտ որ սրբեց իր արիւնով։

Այժմ յիշեցէք «Մեր հայրենիքի» նուիրական տունը՝

Ամենայն տեղ մահը մի է.
Մարդ մի անգամ պիտ մեռնի,
Բայց երանի, որ իր ազգի
Ազատութեան կը զոհուի։

կամ «Ազատութեան» անմահ տողերը՝

Եւ մինչ ի մահ, կախաղան
Մինչև անարգ մահու սիւն
Պիտի գոռամ, պիտ կրկնեմ
Անդադար Ազատութիւն...

---

*) Տես «Երկու տող», էջ 283, երկերի II հատ.

**) Դատաստանական վճռի մէջ ի միջի այլոց ասուած է՝ «Մեղաւոր է Հարաւային Ռուսիայում, հայերի մէջ, հակապետական շարժում առաջ բերելու ձգտման համար»։

և դուք կտեսնէք, որ Նրա բանաստեղծութիւնները արծարծում էին Նրա հրապարակախօսական գաղափարները, իսկ վերջիններս կամ արտացոլում էին Նրա հասարակական գործունէութեան մէջ և կամ իրագործուելու էին կեանքում։

Այսպէս շաղկապուած էին այս զարմանալի անձնաւորութեան մէջ գաղափարը, խօսքը և գործը։

Այսպէս էր «ազատութեան զինուորը», որի մահուան յիսնամեակն է այսօր։

31 մարտի։ Մինաս Բերբերեան

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում ներկայումս կռիւներ են տեղի ունենում 6 ուղղութեամբ. Ծովամերձ շրջան (Տրապիզոնի ռազմագիծ), Բաբերդի, Երզնկայի, Մուշ-Դիարբէքիրի, Բիթլիս-Սղերդի, և Ուրմիոյ լճի շրջաններում։ Տաճկական պարտուած ու յուսալքուած բանակը ստիպուած է այս 6 ճակատների վրայ ևս փորձել կասեցնելու ռուսական առաջխաղացութիւնը, որ այսուամենայնիւ շարունակւում է նոր աջողութիւններ ձեռք բերել, հետզհետէ գրաւելով թշնամու նոր գաւառները։ Թիւրք բանակի տրագիքական դրութիւնն աւելի հասկանալի կը դառնայ, եթէ յիշենք, որ թիւրքերն անգործութեան դատապարտուելով կամ ինքնին հրաժարուելով Բալքաններում ու Եգիպտական ճակատում ռազմական գործողութիւններից, իրենց ամբողջ ուշադրութիւնը կենտրոնացրել են Կովկասեան ռազմաբեմի վրայ. և սակայն շարունակ նահանջ են տալիս անաջող դիմադրութիւնից յետոյ։

Ծովամերձ շրջանում թիւրքերն ըստ առաջնոյն ամենից աւելի գործունէութիւն են ցոյց տալիս. Նրանք այս շաբաթուայ ընթացքում նոյն իսկ երեք անգամ փորձեցին յարձակուել Կարա-Դէրէյի (գետ) աջ ափի վրայ ամրացած ռուսական զօրամասերի վրայ, նպատակ ունենալով ռուսներին յետ շպրտել իրենց դիրքերից, սակայն ամեն անգամ էլ ռուս զօրամասը տապալեց նրանց փորձերը և թիւրքերը յետ մղուեցան Կարա-Դէրէյի միւս ափը։

Այս շրջանում ռուսների ռազմական աջողութիւններին մեծապէս նպաստում է ծովային հաղորդակցութիւնը մթերքի և մարդկանց տեղափոխութեան համար, մինչ թիւրքերը Սև-Ծովում իրենց ռուսական նաւատորմիղի գերակշռութեան, եթէ չասենք տիրապետութեան, պատճառով չէին կարողանում օգտուել այդ առաւելութիւնից։ Բուլգարիայի վրայով ստացուած գերմանական սուզանաւերը միայն անպաշտպան նաւերի և ափի վրայ կարողանում են յարձակուել, առանց համարձակուելու ընդհարուել ռուսական նաւատորմիղի հետ։ Այս վերջինս աչալուրջ հսկում է և այս շաբաթուայ ընթացքում նա փախուստի է մատնել «Բրեսլաուն»... և լրջօրէն վնասել գերմանական մի սուզանաւ։

Բաբերդի ռազմագիծն իր տեղական պայմաններով ամենադժուարն է ներկայումս. և սակայն մեր զօրամասն հետզհետէ գրաւելով լեռնային բարձրաբերձ դիրքերը մօտենում է Բաբերդ քաղաքին՝ այս կերպով ապահովելով Տրապիզոնի թիկունքը։

Դիարբէքիրի ուղղութեան վրայ ռուսներն առաջանալով յետ են մղել թշնամուն Գոյպուկովի հովտում։ Ամբողջ ասիական ռազմագաշտում այս ռազմագիծն է, որ հետապնդում է ռազմագիտական ամենակարևոր նպատակը — հասնել Սիրիայի ծովափին, որից յետոյ թիւրքական բանակն անել դրութեան կը մատնուէր։

Բիթլիսի շրջանում թիւրքերը նոյնպէս փորձեցին յարձակումներ գործել, սակայն ապարդիւն կերպով։

Ուրմիոյ լճի շրջանում քրդական բաւական խոշոր ուժեր թիւրքական կանոնաւոր զօրքի օժանդակութեամբ կռուի են բռնուել ռուս զօրամասի հետ, որին աջողուել է ջարդել նրանց և փախուստի մատնել։ Թիւրքերն ըստ երևոյթին յուսահատ փորձ են արել այս ուղղութիւնից անցնելու Կովկասեան հարաւային ռազմագծերում գործող մեր զօրքի թիկունքը, օգնական ուժեր ստանալով իրենց Մուսուլի զօրաբանակից։

Պարսկական ճակատի վրայ ռուս զօրաբանակի գործողութիւնների մասին պաշտօնական հաղորդագրութիւն չկայ այս շաբաթուայ ընթացքում։ Բաւական կարևոր կռիւ է տեղի ունեցել Շիրազի մօտ, որը ռուսաց կողմնակից Դովլէթ-Դովլէն, ուժեղ կաշկայների ցեղապետը, ջախջախել է Գերմանիայի կողմնակիցների մեծ ուժերը, գերի վերցնելով շուեդացի ինստրուկտոր Էրգմանին և գերմանական հիւպատոսական գործակալին։

Միջագետքում գետերի վարարման շրջանն արդէն անցնելու վրայ է։ Անգլիական հաղորդագրութեան համաձայն, գեներալ Լեքն մարտի 23-ին յարձակուել և խլել է թշնամու դիրքերը Սելխանի շրջանում, Բաղդադից մօտ 70 80 վերստ հարաւ. իսկ մարտի 24-ին անգլիական զօրքը ռմբակոծել է Սաննայաթայի թիւրքական դիրքերը նախապատրաստուելով յարձակուել դրանց վրայ։

Աֆրիկայում գործող անգլիական, ֆրանսական, բելգիական ուժերի վրայ աւելացաւ և նոր դաշնակից Պորտուգալիայի զօրամասը, որ մարտի 28-ին գրաւեց Գերմանական Արևելեան Աֆրիկայում Վիոնգունը։

## ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Այս շաբաթուայ ընթացքում թնդանօթային կռիւն աւելի ևս շեշտուեց այս ճակատի վրայ։ Գերմանական արտիլերիան Վարդարի ձախ ափի վրայ ռմբակոծել է ֆրանսական առաջաւոր դիրքերը, աւերելով մի քանի խրամատներ։

Մի կողմից դաշնակիցների ձեռք առած նախազգուշական միջոցները Բալքանները շրջապատող ծովերում, ուր նրանց 80 ռազմանաւերն հրաման են ստացել ամենախիստ հսկողութիւն անել, միւս կողմից սերբ-չեռնոգորիական 180 000 հազարանոց վերակազմուած ու լաւ սպառազինուած բանակը, որ տրամադրելի է դաշնակիցներին գործելու համար Վալոնայի և Սոլունի շրջանում, ապահովում են դաշնակիցների դրութիւնն այս ճակատում։

Թիւրքական 5 բարձրաստիճան սպայ Ալբանիա են անցել Շէյխ-իւլ-իսլամի ֆեթւան տանելով իրենց հետ, որպէսզի ալբանացիների կրօնական զգացմունքները շահագործելով նրանց ստիպեն անցնել գերմանօ-բուլղարների կողմը. Թիւրքերը յոյս ունին մինչև 50,000 ալբանացի զինել դաշնակիցների դէմ։ Միւս կողմից յայտնի իտալասէր Էսադ-փաշան ցուցմունքներ է տալիս դաշնակիցներին Ալբանիայի առաջիկայ գործողութիւնների համար, գուցէ և վերջ ի վերջոյ իր 20,000 մարդով անցնի դաշնակիցների կողմը։

### ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում, ինչպէս յիշել ենք անցեալում, գարնանային հալոցքի շրջանը լուրջ արգելք է հանդիսանում երկուստեք գործողութիւնների զարգացման, իսկ թնդանօթամարտն ու համեմատաբար փոքր ընդհարումները շարունակւում են. Թնդանօթամարտն առանձնապէս ուժգին բնոյթ է ներկայացնում Սեաղգեօլ-Նարոչ լճերի շրջանում, ուր Բլիզնիկ գիւղի մօտ ռուսները մի քանի դիրքեր են գրաւել գերի վերցնելով 1 սպայ և 777 զինուոր։

Աչքի են ընկնում նաև Գալիցիայում միջին Ստրիպայի վրայ կռիւները, ուր մեր զօրամասերը հանել են 42 ֆուգաս և խլել շատ փամփուշտ և ձեռնառումբեր։

Ֆրանսական ճակատում գերմանացիները խիզախօրէն շարունակում են իրենց յարձակումները Վերդենը շրջապատող դիրքերի վրայ։ Այս շաբաթուայ ընթացքում էր, որ նրանք փորձեցին ընդհանուր յարձակման անցնել աւելի քան 20 կիլոմետր ճակատի վրայ՝ Վերդենից հիւսիս և հիւսիս-արևմուտք, միաժամանակ ուժեղ ճնշում գործադրելով 4 կէտի վրայ։ Կռիւների արդիւնքն այն եղաւ, որ «265» բարձունքը գրաւուեց գերմանացիների կողմից, որոնք կէս կիլոմետրի վրայ են գտնւում նաև «295» ուժեղօրէն ամրացուած բարձունքից։ Գերմանացիները գրաւեցին նաև «267» բարձունքի և Օկուրի միջև գտնուած երկու ֆրանսական ամրութիւնները։ Ֆրանսական աջողութիւնը շեշտուեց Դոմոն բերդի շրջանում, ուր նրանք բաւական առաջացան, Վօի և Դուօմոնի միջև, ուր գերմանական յարձակումը վանուել է մեծ կորուստներով թշնամու համար։

Իտալական ճակատում Վերին Ստրիկոյում աւստրիական Լուզերն ամրոցը հրդեհուեց իտալական թնդանօթային կրակով։ Ընդհարումներ են տեղի ունենում Կարսօի վրայ, ուր թշնամու դէպի Օսլավիա-Սելցիա և Կուզիլոնէ առաջացող զօրամասերը ցրիւ են տրուել իտալական հրաձգութեամբ։

---

# Ներքին տեսութիւն

## ԱԶԳ.

Փախստականների տեղեկութեան համար։

Թիֆլիսում ապրող հայ փախստականների մէջ սխալ լուրեր են տարածուած, թէ կառավարութիւնից նրանց համար նշանակած նպաստի և թէ նրանց Թիֆլիսից հեռացնելու մասին։

Ցանկանալով այդ թիւրիմացութիւնները պարզել, «Համբաւաբերի» խմբագրութիւնը յայտարարում է ի գիտութիւն փախստականների հետևեալը.

1. Փախստականներին Թիֆլիսում կառավարութեան կողմից արգիլուած է ապրել և յունուարին ոստիկանութիւնը նրանց պէտք է հեռացնէր քաղաքից։ Դիմում եղաւ Օգոստափառ Կովկասի Փոխարքային և նա բարեհաճեց թոյլ տալ՝ փախստականներին ապրել Թիֆլիսում և նպաստ տալ մինչև ապրիլի 1-ը նրանց, որոնք մինչև յունուարի 10-ը ցուցագրուած էին և ստանում էին նպաստ Հայկական Կենտրոնական Կոմիտէից կամ քաղաքի մասնաժողովից։ Հայկական Կենտրոնական Կոմիտէն ունէր ցուցագրուած 661 ընտանիք, բայց նա տուել է նպաստներ մօտ 959 ընտանիքի որոշուած չափով—20 կ. մեծերին և 10 կ. երեխաներին—մինչև հինգ տարեկան հասակը։

Հ. Կ. Կոմիտէն բաժանել է մինչև ապրիլի 1-ը 60,728 ռ. 77 կ., իսկ կառավարութիւնից ստացել է միմիայն 20,000 ռ. ուրեմն մնացեալ գումարը 40,728 ռ. 77 կ. Կոմիտէն բաժանել է իրա միջոցներից։

2. Կառավարութեան որոշմամբ Թիֆլիսից հեռացուելու են միայն այն փախստականները, որոնք չեն կարող իրենց աշխատանքով և միջոցներով ապրել. Մնացեալ փախստականներին չի արգելւում ապրել Թիֆլիսում։

---

### ՊԱՊԱՋԱՆԵԱՆԻ ՃԱՌԸ ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱՅՈՒՄ

—

Անցնելով հայկական խնդրին Պապաջանեանն ասում է. «Մեր բարեկամ երկիրների պարլամենտները մի քանի անգամ քննել են թիւրքահայերի և Թիւրքաց-Հայաստանի վիճակը։ Պետական Դուման մինչև այժմ ուշադրութեան չէ առել թիւրք-հայկական դէպքերը, որովհետև երկար ժամանակ չէր գումարւում։ Այնինչ՝ այդ դէպքերը ամենից աւելի Ռուսաստանի շահերն են շօշափում, որովհետև հայերի կէսից աւելին ռուսահպատակ են և նա, բնականաբար, չի կարող անտես առնել այն, ինչ որ կատարւում է սահմանի այն կողմը։ Կովկասի հայութիւնը կարիք ունի ձեր բարոյական աջակցութեան՝ շարունակելու իր սկսած անհաւասար կռիւը։ Հայաստանում կատարուածը աննկարագրելի և անըմբռնելի է երևակայութեան համար։

Բելգիայի, Սերբիայի և Լեհաստանի աղէտը կայ, բայց մարդկային ժողովրդական ողբերգութեան հոմանիշը Թիւրքաց-Հայաստանը հանդիսացաւ։

Ոչ մի ազգ այս պատերազմում այնքան զոհեր չը տուեց, որքան հայը և անծայր աղէտների ենթակայ հայ ժողովուրդը երբէք այնքան չէ կորցրել, որքան այս տարի։

Թիւրք արկածախնդիրների հրէշային սանդարամետական զուարճութեանց զոհ գնացին հարիւր հազար խաղաղ բնակիչ, գլխաւորապէս կանայք ու երեխաներ։ Դեռ պատերազմի սկզբում, երբ Թիւրքիան չէր նետուել կռուի դաշտը, «Միութեան և Յառաջդիմութեան» յանձնաժողովի անդամները և պաշտօնական անձինք որոշ առաջարկներ էին անում թիւրքահայերին։ Նրանց խոստանում էին ոչ միայն կեանքի անձեռնմխելիութիւն, այլև ինքնավարութիւն Թիւրքաց-Հայաստանի և Գերմանիայի խոստացած Կովկասի սահմաններում, եթէ սրանք Թիւրքիայի կողմն անցնէին

էր՝ ընթացք չտալ այդ գործին. բայց վերստին կենդանութիւն ստացող այդ օրինագիծը միայն Սաբլէրի հեռանալուց յետոյ, երբ յաջորդաբար նրա տեղը բռնեցին եկեղեցական վերանորոգման անկեղծ կողմնակիցներ Սամարին և Վոլժին։ Այժմ եկեղեցական ծուխի իրաւասութեան խնդիրը քննւում է Պետական Դումայի մասնաժողովում, որից յետոյ անցնելով Պետական Դումայի և Խորհրդի քննութեան՝ կը դառնայ օրէնք։

Այդ օրէնքով առաջին հարուածն է տրւում եկեղեցական բիւրոկրատիայի ինքնիշխան տիրապետութեան, որից յետոյ եկեղեցական պաշտօնեաների վիճակը կախում կունենայ ոչ թէ եկեղեցու իշխանների քմահաճոյքից, այլ եկեղեցական համայնքի տնօրինութիւնից, որով ճանապարհ կը բացուի ժողովրդասէր, ընդունակ և ազնուամիտ գործիչների առաջ եկեղեցական - հասարակական ասպարէզի վրայ, ուր մինչև այժմ այդպիսիները միայն հալածանքի էին ենթարկւում, ինչպէս վերև յիշուած Մոսկուայի յայտնի եկեղեցական գործիչ Востоковъ-ը, որը չնայելով հասարակութեան բուռն բողոքին, անցեալ տարի եկեղեցական իշխանութեան տնօրինութեամբ տեղափոխուեց յետ ընկած խուլ գաւառական Коломна քաղաքը՝ իբրև աքսորատեղի։

Երբ ուղղափառ ծուխի իրաւասութեան օրէնքը հրատարակուի, մենք առիթ կունենանք բաղդատական տեսութեան առնել այն՝ համեմատելու համար հայոց եկեղեցական ծուխին վերաբերեալ գործող օրէնսդրութեան հետ, որը, ինչպէս յայտնի է, պարունակւում է 1836 թուի հայոց եկեղեցու Положеніе-ի մէջ, որի հետ միասին քննութեան կառնենք և ամուսնալուծութեան ուրուագիծը, որը նոյնպէս քննւում է օրէնսդրական կարգով և մի օր օրէնք դառնալով վերջ պիտի տայ կոնսիստորիաներում տիրող ամուսնալուծական գործավարութեան խայտառակ կարգերին։ Նախկին մինիստր Սուխումլինովի կնոջ առաջի ամուսնութեան ապահարզանի գործը և մասնաւոր փաստաբան Արցիմովիչի մասին անցեալ տարի կայացած քրէական դատավճիռը գալիս են հաստատելու, որ ամուսնալուծման գործող օրէնքի ձևական պահանջները ստեղծուեն կոնսիստորիաների խորքերում այնպիսի հեղձուցիչ մթնոլորտ, ուր կնոջ և մարդու պատիւն ու բարոյականութիւնը ամենից առաջ փորձութեան են ենթարկւում անբարեխիղճ և մութ անկիւններում գործող «աբլակատների» և նրանց օգնական հոգևոր ատենի պաշտօնեաների կողմից։

Երբ այդ երկու օրէնքները հրատարակուեն, առաջի հերթին պէտք է մտածել և մեր հնացած «Положеніе»-ն հիմնովին վերաքննելու և փոփոխելու մասին, ուր Յովհաննէս Կարպեցու ժամանակից մնացած հնաւանդ և ներկայ կեանքի պահանջներին ներհակ կանոնները իրենց դիպուածական (казуистичный) և անխտեմ բնոյթով արդէն վաղուց դարձել են մեռած տառ. սակայն այդ հարցի քննութեան մենք թերևս այլ անգամ վերադառնանք։

Յ. Սպէնդիար

## ԿՈՎԿԱՍԵԱՆ ԻՐԱՒՈՒՆՔ

*(Դասախօսութիւններ Կովկասի մասին իշխ. Գ. Թումանեանցի)*

—

Մոսկուայի հռչակաւոր Շանեաւսկու համալսարանը յաճախ գիտական նորութիւններ է մտցնում իր առարկաների մէջ։ Ապրիլ ամսին համալսարանում պէտք է կարդացուի 10 դասախօսութիւն «Կովկասեան իրաւունք» կովկասցիների իրաւական, հասարակական և տնտեսական կենցաղը)։ Դասախօսելու է մեր աշխատակից ու Կովկասեան հասարակական գործիչ իշխ. Գ. Թումանեանցը։ Այս մասին դասախօսութիւններ ցարդ Ռուսաստանում չեն կարդացուել, ուստի և աւելորդ չենք համարում տալ ընթերցողներին դասախօսութիւնների ծրագիրը, 1. Ներկայ դասընթացքի (կուրսի) նպատակը։ Համառօտ աշխարհագրական տեղեկութիւն Կովկասի մասին. 2. Գոյքի և ընտանեկան իրաւունքը Կովկասում։ 3. Գիւղացիների ազատագրումը. 4. Կալուածատիրութեան ձևերն և սերուիտուտներ. 5. Ֆինանսական սիստեմ, 6. Ոճրագործութիւններն ու կռիւը նրանց դէմ. 7. Կովկասի վարչական կազմակերպութիւնը. 8. Զեմստուոյին ու քաղաքային վարչութիւն. 9. Դատակարգային հաստատութիւններ, 10. Կովկասեան իրաւունքի ուսումնասիրութեան աղբիւրները։ Այս դասախօսութիւնները բնականաբար հետաքրքրութիւն կը շարժեն Մոսկուայի բարձրագոյն դպրոցների կովկասեցի ուսանողների մէջ և նրանք անշուշտ կ'օգտուեն դէպքից ծանօթանալու իրենց երկրի իրաւանց խնդիրներին։

## ԳԱՒԱՌ

*ԲԱԹՈՒՄ.*—Ուեղէի շրջակայքի հայերի դրութեան մասին ստացւում են յուզիչ տեղեկութիւններ։

Երբ մեր զօրքերը Սուրմէնը (Ուեղէի և Տրապիզոնի մէջ տեղն է) վերցնում են թաճիկներից, ստացւում է տեղեկութիւն, որ 10 ժամ հեռաւորութեան վրայ, լեռներում պատսպարուել են մի խումբ հայեր։ Տասը հայ զինուորներ իրենց իշխանաւորի թոյլտուութեամբ ուղևորւում են լեռները փնտռելու և ազատելու նրանց։ Երկարատև փնտռելուց յետոյ, վերջապէս գտնում են պատսպարուած հայերի տեղը. նրանց պահապանները սկզբում հայ զինուորներին հեռուից ընդունում են թշնամիների տեղ և պատրաստւում դիմադրութիւն ցոյց տալու։ Հայ զինուորները նշան են տալիս և հասկացնում, որ թշնամիներ չեն և երբ մօտենում են, տեսնում են, որ մի ժայռի այրում թափուած են մօտ 200 հոգի երեխաներ և կանայք, իսկ տղամարդիկ միայն ութ հոգի են, բոլորը զինուած պաշտպանութեան համար թշնամիների դէմ։ Ուտելիքը մի քանի օր առաջ սպառուած է լինում և քաղցածութիւնից երեխաների և կանանց մի մասը հիւանդ։ Զինուորները բոլորին բերում են Սուրէն, ուր և գտնւում են առայժմ։ Ստացուել են տեղեկութիւններ, որ համանման դրութեան մէջ գտնւում են խմբերով հայեր Սանտոնայի, Կուշնայի և Շանակի շրջաններում։ Այդ տեղերում, անտառներում ու լեռներում, պատսպարուած են մօտ 500—600 հայ։ Դժբախտաբար միջոցներ չեն ձեռք առնւում նրանց և թէ թաճիկների գիւղերում ցրուած հայ կանանց և երեխաներին ազատելու համար։

* * *

*ՍՈՒԼՏԱ (Ախալք. գաւառ), 29 մարտի.*—Մեզանում գարուն է, ցանքսերն սկսուած են. աչքի է զարնում աշխատող ձեռքերի պակասութիւն, որն երբեմն լրացնում են կանայք։

Գաւառումս ևս կենսական մթերքները սարսափելի թանգութեան են հասել. շաքար չի ճարւում, ֆնտ. արժէ 50 կոպ., միսը 25 կոպ., իւղը 1 ռ. 30 կ., Ռուսաստանի ալիւրի պարկը (5 փութ) արժէ 22 ռ., գիւղացութիւնը ապրում է գարի հացով։ Խօսւում է գիւղումս սպառողական խանութ բանալու մասին։

Սուլտան գաւառիս առաջին մեծ գիւղն է, սակայն, ինչպէս ասացի, կեանք չկայ, հասարակութեան մէջ անտարբերութիւն և անհոգութիւն է տիրում, գծուծ թայֆայական հաշիւներ ինչքան ուզեց կան, որի փառաւոր ապացոյցը Համբարեանների տունը քանիցս կրակ գցելն է։

Երբեմն ունէինք Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղ նախաձեռնի դրութեամբ, որ ունէր բաւական շատ անդամներ և 800 կտոր գրքով մի գրադարան. այժմ ճիւղը գոյութիւն չունի, գրադարանի գրքերը սրա-նրա տանն են, հազիւ թէ 300 կտոր գիրք մնացել է ճիւղի անունով, որն այս ու այն պատճառով անհատներ գրաւել են։

Երեք չորս տարի է ինչ ձեռնարկուել է դպրոցական շէնք, բայց գիւղացոց անփութութեան պատճառով հազիւ պատերը բարձրացուած և այս էլ մեր հայրենակից Յ. Մալխասեանի շնորհիւ, որ նուիրուած է Սուլտայի կուլտուրական գործին։ Նա մեզ գրում

է, որ այժմ հաւաքած ունի 1000 ռ.-ուց աւելի մի գումար շէնքի համար. յոյս ունենք նրա ջանքերով մինչև աշուն շէնքը աւարտուած կը լինի։ Աւելին կայ. Մալխասեանի խնդրանօք է, որ Կ. Հ. Բ. Ընկ. տարին տալիս է 250 ռ. նպաստ (պ. Տ. Աֆրիկեանի նուիրաբերած գումարից) գպրոցիս, իսկ ինքն իր սուղ միջոցներից 50 ռ.։

Վան-իկ

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

—

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը տուել է մշտական անդամութեան մրցագիր (դիպլոմ) հետևեալ անձանց, որոնք ներկայացրել են Խորհրդին 100-ական ռուբլի. 1) պ. պ. Կարապետ Շիրինեանին, 2) Յովհաննէս Ղարաջեանին։

***

Թիֆլիսի քաղաքագլուխ պ. Ա. Խատիսեանը ներկայացրել է Խորհրդին 200 ռուբլի յօգուտ գաղթական որբերի։ Այդ գումարը ժողովուել է պ. Խատիսեանի մարտի 14-ին Մոսկուայում, գրական-գեղարուեստական թատրոնի դահլիճում դասախօսութիւն կարդալուց։

Խորհուրդը յայտնում է իր շնորհակալութիւնը։

***

Երևանի թեմի ուսուցիչ պ. Տիգրան Շահբազեանը դիմել էր Խորհրդին նպաստ խնդրելու իր հիւանդութեան պատճառով։ Խորհուրդը յարգելով նրա խնդիրը նշանակեց նրան ամսական 30 ռուբլի նպաստ 5 ամիս ժամանակով և որոշեց առաջարկել Պետրոգրադի Բարեգ. Ընկ. ճիւղի Վարչութեան, որ սենեակ տրուի ճիւղի սանատորիայում։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Առետր. Տուն Վ. Վիսոցկի և ընկ.-ից 50 ռ. հանգուցեալ Ե. Սէյլանեանի դագաղի վրայ պսակի փոխարէն։

***

Հանգուցեալ Աւետիս Վարդապետեանի կտակի համաձայն նորից ստացուեց յօգուտ Կ. Հ. Բ. Ընկ. դրամադրանի 200 ռ.։

***

Գնդապետ իշխան Կոնստանդին Սերգ. Արղութեան-Երկայնաբազուկ նուիրել է Կ. Հ. Բ. Ընկ. 1000 ռ. (5½ պետական փոխառութեան տոմսակ) այն պայմանով, որ տոկոսները Ընկերութիւնը յատկացնի Գորիի հայոց դպրոցի չքաւոր աշակերտներին, իսկ գումարը պահուի իբր անձեռնմխելի։

***

### ՃԻՒՂԵՐ

ԵՐԵՒԱՆ. Երևանի Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի 1915 թ. տեղեկագրից երևում է, որ այդ տարեթւում վարչութեան կազմը եղել է՝ նախագահ՝ տիկ. Մ. Միրզոյեան, փոխ-նախ. տիկ. Հ. Խուդաբաշեան, անդամներ. Մ. Մուսինեան, Ա. Ազիզեան—գանձապահ և քարտուղար Ա. Մելիքեան։ Վարչութեան գործունէութեան մէջ առաջին տեղը բռնել է որբանոցը, երբ սաների թիւն հասել է 40։ Բացի այդ վարչութիւնը ուժերը ներածին չափ մասնակցել է փախստականների օգնութեան գործում, կարել տալով նրանց համար հագուստեղէն։ Նոյն թուականի ընթացքում ճիւղը ունեցել է մուտք Հայոց Կենտր. Կոմիտէից ստացած գումարի հետ 14,396 ռ. 37 կ. և ծախս 11,978 ռ. 65 կ.։

***

ՎԵՐԻՆ-ԱԳՈՒԼԻՍԻ Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի անդամ պ. Մ. Բալանթարեանը դիմելով Խորհրդին խնդրել է միջնորդութիւն յարուցանել պարենաւորման գլխաւոր լիազօր պ. Շաշկովկի առաջ յիշեալ գիւղի համար երկու վագոն ալիւր բերել տալու, ուր զգացւում է շատ մեծ կարիք։ Խորհուրդը յարգելով յիշեալի խնդիրը դիմել է ուր որ հարկն է։

***

ՄԵԾ-ՂԱՐԱՔԻԼԻՍԱ.—Տեղւոյն Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի վարչութիւնը նոյնպէս դիմել է Խորհրդին Մ.-Ղարաքլիսայի համար ալիւր ստանալու, ուր աշխատող ձեռքերի պակասութեան պատճառով արդէն սով է սկսուել։ Խորհուրդը արել է կարևոր միջնորդութիւնը։

***

### ՆՈՒԷՐՆԵՐ

Կ. Հ. Բ. Ընկ. և նրա կից Կենտր. Կոմիտէին

1. Պատերազմից վնասուածներին օգնող Կովկասի գլխաւոր Կոմիտէն նուիրել է Մուշի, Խնուսի և այլ տեղերի փախստականների համար շաքար և թէյ բաժանելու 17,000 ռ.։ 2. Փախստականների գործերի գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեւից փախստականների շորերի համար 26,000 ռ.։ 3. Իւան Գրիգորեւիչ Թամամշեանից յօգուտ փախստական որբերի 100 ռուբ.։ 4. Միքայէլ Գ. Կաֆիեներ 5 ռ.։ 5. Մկրտիչ Պօղոսեան Լիսիցեանից հանգուցեալ Եղիշէ Սէյլանեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն 25 ռ.։ 6. Եղբայր Նարինեաններից, նոյնպէս հանգուցեալ Եղիշէ Սէյլանեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն 100 ռ.։

***

Ամերիկական հայերին նպաստող Ընկ. կողմից հիւպատոս միստէր Սմիտը յայտնել է Հայկական Կենտրոնական Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանցին, որ ընկերութիւնը ունի գնած Բաքւում 2000 փ. թէյ և 350 արկղ նաւթ, որը Ընկերութիւնը նուիրում է Կոմիտէին փախստականների համար։ Այդ նուիրատուութիւնը արժէ 10,000 ռ.։

***

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացաւ աշակերտական ճաշարանի օգտին պ. Պարոն-Սարգսեանի ընտանիքից հանգուցեալ Եգոր Պարոն-Սարգսեանի յիշատակին 50 ռուբլի։

***

ՍԱՄԱՐԿԱՆԴԻ, Կանանց Կոմիտէն, որի նախագահը Ե. Երամիշեանն է, իսկ գանձապահ-քարտուղարը՝ Վ. Մխիթարեանը, իր հիմնած թէյատան մուտքից ուղարկել է պ. Ս. Յարութիւնեանին 400 ռ. յօգուտ հայ որբերի։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է ի յիշատակ հանգ. Եղիշէ Սէյլանեանի Կողբայ ագահանքի ընկ.-ից 75 ռ., Ալէքսանդրոպոլսկու շաքարի գործ. ընկ.-ից 100 ռ., եղբարք Սէյլանեաններից հոգեհացի փոխարէն՝ յօգուտ Ընկ. ճաշարանի 100 ռ. և տեղական չքաւորների 100 ռ.։

***

Պ. Եգոր-Պարոն Սարգսեանից շնորհակալութեամբ ստացուել է յօգուտ ճաշարանի 50 ռուբլի։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

### ՈՐ ՍՏԱՑԵԼ Է Հ. Կ. ԿՈՄԻՏԷՆ

ԽՆՈՒՍ, Հ. Կ. Կոմիտէի լիազօր Կարօ Սասունուց. Խնուսում փախստականների թիւը հասել է 2000 հոգու. ամենայն օր գալիս են նոր խմբեր զանազան տեղերից։ Շուտափոյթ փոխադրեցէք անպի համար 10,000 ռ.։

ԷՐԶՐՈՒՄ, պ. Զօրեանից. Ուղարկեցինք Սարիղամիշ 500 փախստականներ. այստեղ մեծ պակասութիւն է անպի. պահել փախստականներին դժուար է։ Զանազան վայրերից դուրս են գալիս հատ-հատ կամ խմբերով կենդանի մնացած հայեր, մեծ մասամբ երեխաներ և կանայք։ Փոխադրեցէք փող։

ԴԻԱԴԻՆ, շրջանային կառավարիչ, գնդապետ Խովէնից. Բացւում է դպրոց ռուս-հայկական. խնդրում եմ ուղարկեցէք դասագրքեր, դասական պիտոյքներ և երեխաների չորեր 657 հոգու։

ՍԱՐԻՂԱՄԻՇ, կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղի վարչութիւնից և Տէր-Տաճատ քահանայից. Այստեղ կայ 17 որբ. այսօր Էրզրումի շրջանից եկաւ փախստականների նոր խումբ 49 հոգուց բաղկացած։ Քաղաքների Միութիւնը նորից բացեց սննդատու կայարան։ Օգնութիւնը շատ անբաւարար է. փախստականների բնակարանը շատ նեղ է և փոքր, քնում են յատակի վրայ, ոչ մի յարմարութիւն. Էրզրումից վաղը սպասում ենք մի նոր խումբ փախստականների 300 հոգուց բաղկացած։

Որբերին առայժմ ուղարկում ենք Կուրդուկում՝ Մոսկուայի Կոմիտէտի ապաստարանը։

ԿԱՐԱԿՈՒՐԴ, կ. Հ. Բ. Ընկ. տեղական վարչութեան քարտուղար Թորոսեանից. Որբանոցը բացուած է, ազատ տեղ կայ 15 հոգու. կարգադրեցէք ուղարկել որբեր. փոխադրեցէք փող։

ՈՐՈՇՈՒՄՆԵՐ

Այս հեռագիրների հիման վրայ Հայկական Կենտրոնական Կոմիտէն իր վերջին նիստում, որը կայացաւ հինգշաբթի օրը, մարտի 31-ին, որոշեց հեռագրով փոխադրել 1) Խնուս 5000 ռ., 2) Էրզրում 2000 ռ. և 3) Բաշ-Քէոյ 500 ռ.։

Բացի այս, Կենտրոնական Կոմիտէն որոշեց դիմել փախստականների գործերի գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեւին և խնդրել, որ նա կարգադրի՝ ա) կանոնաւոր կերպով պայոկներ տրուին Մուշի և Խնուսի շրջանների փախստականներին. բ) Բասենի շրջանում բաց անել փախստականների համար հիւանդանոց և գ) Թոյլտւութիւն և միջոցներ տայ Հ. Կենտրոնական Կոմիտէին՝ հայրենիք վերադարձող փախստականների համար Վան գնացող լեռնային ճանապարհի վրայ սննդատու կայարաններ բաց անել։

# Քրոնիկոն

Այսօր ժամ-ը 10-ից մինչև 3-ը նշանակուած է քաղաքային իրաւասուների լրացուցիչ ընտրութիւն։ Իրաւասուների նոր կազմը կը մտնի իր պաշտօնի մէջ մայիսի սկզբին։ Հայ իրաւասուների թիւը հասնում է 50 հոգու, իսկ իրաւասուների ամբողջ թիւը 80 է։

* * *

Հինգշաբթի, մարտի 31-ին, Թիֆլիսի Ժողովարանում կայացաւ Հայ Գրողների Ընկերութեան նախաձեռնութեամբ գրական երեկոյթ, որը նուիրուած էր Միքայէլ Նալբանդեանի յիշատակին՝ նրա մահուան յիսնամեակի առիթով։ Երեկոյթի ծրագիրը շատ հետաքրքրական էր։ Երեկոյթը գրաւել էր մեծ հասարակութիւն և անցաւ շատ յաջող։

* * *

Մարտի 29-ին Թիֆլիսի նահանգապետ Ֆլիգել-ադիւտանտ Ա. Ն. Մանդրիկայի հրաւիրանօք և նրա նախագահութեամբ նահանգական տանեան դահլիճում կայացաւ խորհրդակցութիւն Թիֆլիսում Մեծ Իշխանուհի Մարիա Պաւլովնայի Կոմիտէի ճիւղ կազմելու։ Կոմիտէի նպատակն է՝ հիմնել կօշիկներ և չորեր կարելու արհեստանոցներ, ուր պէտք է աշխատեն միմիայն պատերազմում ոտներից վնասուած զինուորներ։ Նիստին հրաւիրուած էին զինուորական բարձրաստիճան պաշտօնեաներ, ազնուականների պարագլուխներ, Փոխարքայի խորհրդի անդամ կոմերգեր Ալիշևսկի, փոխ-նահանգապետ Պանով, քաղաքագլուխ Ա. Ի. Խատիսեան և կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդի նախագահ Ս. Ցարութիւնեանց։ Խորհրդակցութիւնը որոշեց հիմնել ճիւղ և բաց անել արհեստանոցներ։

* * *

Ապրիլի 20-ին Թոքախտի դէմ կռուող ընկերութիւնը կազմակերպում է «Սպիտակ ծաղկի» օր. մուտքը յատկացուելու է գլխաւորապէս Աբասթումանի սանատորիայի շինութեան։

* * *

Կիևի համալսարանում, որը այժմ գտնւում է Սարատովում, մագիստրոս Վ. Տոտոմեանցը նորերս պաշտպանեց մեծ յաջողութեամբ գիտական դոկտորութեան աստիճան ստանալու համար իր դիսերտացիան և արժանացաւ համալսարանի կողմից այդ աստիճանին։

Պ. Տոտոմեանը Զատկի տօներին գալու է Թիֆլիս և կարդալու է երեք դասախօսութիւն, մէկը ժողովարանում, իսկ երկուսը՝ Գիւղատնտեսական Ընկերութեան դահլիճում։

* * *

Անցեալ հինգշաբթի Թիֆլիսից ուղևորուեց Պետրոգրադ, պատերազմից վնասուածներին օգնող Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլաևնայի Կոմիտէի ներկայացուցիչ Ի. Բ. Բուդաղեանը (հանգուցեալ Եղեանի քրոջ որդին), որ եկած էր փախստականների գործերի համար։ Նա շրջեց մի քանի վայրեր գեներալ Վ. Մ. Թամամշեանի հետ, անմիջապէս ծանօթացաւ փախստականների դրութեան հետ, կանոնաւորեց փախստականների ցուցակագրութիւնը և հետը տարաւ մեծ քանակութեամբ նիւթեր զեկուցանելու Կոմիտէին։

* * *

«Կարմիր ձուի» օրը Թիֆլիսում 3056 ռ. մուտք է եղել. այդ գումարով նուէրներ են ուղարկելու ռազմաբեմը Զատկական տօներին։

* * *

Քաղաքագլուխ Ա. Ի. Խատիսեանը խնդիր է յարուցել նահանգապետի միջոցով, որ Թիֆլիսի Քաղաքային Դումային իրաւունք տրուի առաջիկայ զեմստւային խորհրդակցութեան մէջ ունենալ երեք ներկայացուցիչ։ Ցանկալի է, որ համանման խնդիրներ յարուցանեն և միւս քաղաքների վարչութիւնները, որոնք բացի իրենց քաղաքագլուխներից ուրիշ ներկայացուցիչներ չեն ունենալու, ինչպէս է օրինակ Երևանը։

* * *

Թիֆլիսի Հայ Կանանց Կոմիտէն պատրաստում է նուէրներ ուղարկելու հայ կամաւորներին Զատկական տօների առթիւ։

* * *

Թիֆլիսում վախճանուեց յայտնի վաճառական Եղիշէ Սէյլանեանց։ Հանգուցեալի եղբայրները, ինչպէս լսում ենք, որոշել են նրա յիշատակին նուիրել 25,000 ռ., այդ գումարը բաժանելու են հայկական ընկերութիւնների մէջ։

* * *

Երևանի քաղաքագլուխ Ս. Ա. Խաչատրեանը եկել է Թիֆլիս քաղաքային վարչութեան գործերով։ Նա, ի միջի այլոց, յարուցանում է փոխառութեան խնդիր քաղաքի կարիքների համար։ Չընայած որ Երևանը պատերազմական շրջանում է համարւում, հետևապէս նրա դրութիւնը, շնորհիւ պատերազմից ծագած նոր և սուր կարիքներին բացառական է, այնուամենայնիւ քաղաքի միջոցները մնում են առաջուանը և ոչ պետութիւնից և ոչ մի տեղից աջակցութիւն և օգնութիւն չէ ստանում։

* * *

Անցեալ չորեքշաբթի Թիֆլիսում վախճանուեց կամերգեր, իշխան Ն. Վ. Արղութեան-Երկայնաբազուկ, որ եղել է Թիֆլիսում քաղաքագլուխ և հասարակութեան մէջ վայելում էր կըրթուած և ազնիւ գործչի համբաւ։

* * *

Հաշտարխանի հայ հասարակութեան միջոցներով Թիֆլիսում բացուած փախստական երեխաների ապաստարանը կառավարելու համար կազմուել է հինգ հոգուց բաղկացած վարչութիւն՝ նախագահութեամբ տիկին Հ. Բ. Առստամեանի։ Ապաստարանում ըն-

դունելու են 50 երեխաներ. Թիւը դեռ չէ լրացուել։ Էջմիածնի Եղբայրական Օգնութեան նախագահ Գարեգին վարդապետը դիմել է վարչութեան և առաջարկել, որ վարչութիւնը ընդունի Էջմիածնից 30 որբեր։

# Արտաքին տեսութիւն

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹՈՒՐՔԵՐԸ ԵՒ ԳԵՐՄԱՆԱՑԻՔ

(„Биржевыя Вѣдомости" յօդուած Ա. Տիրկովայի)

Այն արիւնոտ կոտորածը, որ այս ամառ պայթեց Հայաստանի գլխին, ցոյց տուեց մեզ, թէ երիտասարդ Թիւրքերը ինչպէս հեշտ և հետևողականօրէն վճռած են եղել Հայոց հարցին վերջ տալ։ Ահմեդ Ռիզայի բանտարկումն էլ ինքնին հաւանական է։ Ես նոյն իսկ տրամադիր եմ հաւատալու, որ նրա բանտարկութեան և հայերի վրայ գործուած նոր բռնութիւնների միջև մի ներքին կապ կայ։ Եւ չեմ էլ կարող թոյլ տալ կարծելու, որ նա համակրելիս լինէր Թալաաթ-բէյի արիւնոտ քաղաքականութեանը։

Ահմեդ-Ռիզան ամենաբնորոշ դէմքերից մէկն էր Թիւրքերի սկզբնական սահմանադրական շարժումների ժամանակ։ Աբդիւլ-Համիդի բթամիտ և անլուր բռնութիւնների ձեռքից փախչելով Պարիզ, Ահմեդ Ռիզա-բէյը ֆրանսական պոզիտիւիզմի հաւատարիմ և համոզուած աշակերտն է եղել և թիւրք լեզուով Օգիւստ Կոնտի մասին մի գիրք է գրել։ Պարիզում նրա խմբագրութեամբ լոյս տեսնող «Մեշուերէթ» թերթում նա շարունակ քարոզել է եւրոպական կուլտուրայի հիմնական սկզբունքները—սահմանադրական կարգ, լուսաւորութեան կարևորութիւն, ազգութիւնների ազատութիւն, կրօնական համբերողութիւն, մտքի ազատութիւն և այլն։

Բնորոշելով այդ իսկական թիւրք հայրենասէրին՝ մեր դեսպանութեան առաջին թարգման Մանդելշտամը ասում էր ինձ.

—Քանիցս Աբդիւլ-Համիդի լրտեսները աշխատել են կաշառել Ահմեդ Ռիզային, բայց միշտ էլ դատարկաձեռն յետ են դարձել։ Այդ աւելի ես կատաղեցնում էր սուլթանին, ըստ որում միւս փախստականները շատ սիրով ընդունում էին սուլթանական ոսկին։ Ահմեդ Ռիզան գրեթէ միշտ քաղցած էր, բայց միշտ էլ մնում էր անկախ։

Շատ հետաքրքրական և բուն քաղաքական տեսակէտի կարևոր կը լինէր հասկանալ, թէ ինչպէս եղաւ, որ գերմանական ազդեցութիւնը այդպէս խիստ և ուժեղ կերպով յաղթանակեց ֆրանսական երկարամեայ և խոր, իսկ մասամբ և անգլիական ազդեցութեանը։ Մի քանի տարուց ի վեր շարունակ արդէն պատրաստւում էր այդ փոփոխութիւնը, բայց Համաձայնութեան Պետութիւնների թէ դիպլոմատները, թէ հրապարակախօսները և թէ քաղաքագէտները ուշացել են գերմանացոց վարպետօրէն և արագ առաջ տարուող ինտրիգների առաջն առնելու։ Շատ հաւանական է, որ երբ գերմանացիք սկսել են «Միութիւն և Յառաջադիմութիւն» կուսակցութեան տէր ու տնօրէնը դառնալ, ձայներ լսուէին թիւրք կառավարութեան ներկայ քաղաքականութեան դէմ։ Շատ հաւանական է, որ հէնց Ահմեդ Ռիզա-բէյը, այդ հումանական և ֆրանսասէր մարդը, բողոքած լինի, աշխատած լինի ցոյց տալու, թէ ուր կը տանի գերմանացիների հետ միութիւնը։

Եթէ Թալաաթ բէյի՝ այդ ամարդի և միջոցների մէջ խտրութիւն չը դնող մարդու համար հայերի կոտորածը մի միջոց է Հայոց հարցից ազատուելու, կարելի է վստահօրէն պնդել, որ Ահմեդ Ռիզա-բէյը անընդունակ է այդ տեսակ հայեցակէտի վրայ կանգնելու։

Մի անգամ խորամանկ ծերուկ Սայիդ փաշան հայոց լիդէր Վռամեանի հետ խօսակցութեան ժամանակ ասել է.

— Մենք, Թիւրքերս, և դուք, հայերդ, միատեսակ հետաքրքրուած ենք Օսմանեան կայսրութեան ամբողջութեամբ։ Մենք էլ ձեզ հետ գնալու ոչ մի տեղ չունենք։

Այդ խօսքերը նախերգանք էին այն խօսակցութեան, թէ Հայաստանում ինչ տեսակ բարեփոխութիւններ պէտք է մտցուէին։ Հայերի պահանջները բաւական համեստ էին. անձեռնմխելիութիւն «միլեթների», այսինքն՝ եկեղեցական համայնքների իրաւասութեան, և ոչ միայն թիւրք, այլ և հայ պաշտօնեաներ նշանակել տեղումը։ Իսկ որ ամենագլխաւորն է—հողային վէճերը և խառնաշփոթութիւնները վճռել արդարութեամբ։ Այս ամենը թէ Սայիդ փաշան և թէ «Միութիւն և Յառաջադիմութիւնը» քանիցս խոստացել են, բայց միշտ էլ խաբել են։

Սայիդ փաշայի հետ տեղի ունեցած այս խօսակցութեան օրից շատ ժամանակ չէ անցել—երեք տարուց քիչ աւելի։ Բայց այնպիսի տարիներ, որոնց ամեն մի օրը արիւնով է ողողուած։

Վռամեանը, այդ անխոնջ կազմակերպիչը, կրթուած քաղաքագէտը և կրակոտ հայրենասէրը, որը ինձ յիշեցնում էր Ինսարովին, միայն թէ գործունեայ և կրքոտ, երիտասարդ թիւրքերի ձեռքով արդէն դաւաճանօրէն սպանուած է Վանի մօտ։ Նրանք գիտէին, թէ ում են սպանում. Նրանք գիտէին, որ հայ ժողովրդի համար այդ կորուստը անփոխարինելի է։ Եւ ոչ թէ միայն հայերի համար, այլ և մեզ, ռուսներիս համար։

Նրա մէջ միացած էին ճշմարտասիրութիւնը և գործնականութիւնը, ոյժը և անսպառելի սէրը դէպի իր ազգը։ Նա գիտէր նրա նեղութիւնները և թուլութիւնները և չէր վախենում բաց ճակատով նայել ճշմարտութեան։ Նա իսկական ժողովրդական տրիբուն էր։ Այժմ, երբ Թիւրքահայերի մի մասը Ռուսիային անցաւ, Վռամեանը մեծ դեր կը կատարէր. նա ընկերաբար կը մասնակցէր ռուս հասարակական գործիչների դժուար աշխատանքին, և պատերազմի ժամանակ և ապագայում սպասուող պետական կազմակերպչական գործին։

Բայց նա այլևս չկայ, ինչպէս չըկան նրա և հարիւր հազարաւոր ցեղակիցները։

Նրանց սպանել են քիւրդերը. բայց այժմ արդէն անկասկած է, որ մի ամբողջ ազգի բնաջնջման դժոխային ծրագիրը յղացել է գերմանացիների գլխներում. որ քիւրդերը միայն գործիք են եղել, իսկ խրախոյսը գալիս է եղել Բեռլինից։

Նոյն իսկ այդ մասին մտածելը սարսափելի է. հաւատալը սոսկալի։ Բայց այնպիսի ժամանակներում ենք ապրում, երբ պէտք է կարողանալ ճշմարտութեան առաջ կանգնած յաղթահարել սարսափը։

Այս աշնանը ես Թիֆլիսումն էի. այնտեղ պատահեցի Թիւրք պառլամենտի երկու անդամի։

Դրանցից մինը Էրզրումի պատգամաւոր Բասարմաջեանն էր, ինժեներ, որին նոյն իսկ երիտասարդ թիւրքերը ուզում էին ճանապարհների հաղորդակցութեան մինիստրի պաշտօնը յանձնել. թէև Աբդիւլ-Համիդի օրով քիչ էր մնացել որ նա Օսմանեան բանկը պայթեցնի։

Միւսը Մուշի վիլայէթի պատգամաւոր Փափազեանն էր։

Քանի քանի անգամ ես նրանց պատահել եմ Պոլսում, և պառլամենտում, և «Ազատամարտի» խմբագրատանը, ուր ես ինձ ըզգում էի ինչպէս ռուս ազատամիտ թերթի խմբագրատան։ Առհասարակ ես նրանց պատահում էի ամեն տեղ, ուր հասարակական և քաղաքական աշխատանք էր կատարւում։

Իսկ ներկայումս նախկին գործիչները դժուարութեամբ ճողոպրելով մարդասպանների ձեռքից, դարձել են փախստականներ։

Նրանք թւում էին իրենց ընկերների անունները—փաստաբաններ, բժիշկներ, քաղաքագէտներ, վիպասաններ—և ամեն մի անուան վերջը աւելացնում.

— Մորթուած է... խողխողուած է... կախուած է...

Կարծես հին աւազակային միապաղաղ երգ լինէին մրմնջալիս։ Ես ոչ մի կերպ չէի կարողանում պատկերացնել այդ բանի-

մացների այդպիսի գազանային և սոսկալի վախճանը։ Նրանց բոլորին էլ ես ճանաչում էի։

Եւ քանի Փափազեանը առաջ էր տանում իր պատմութիւնը, հրէշաւոր պատկերի տակից իմ աչքին աւելի պարզ պատկերանում էր Գերմանիայի արիւնոտ ձեռքը մի ամբողջ ժողովրդի բնաջնջման։

***

Դեռևս 1912 թ. Ֆոն-դեր-Հոլցը Բեռլինում մի զեկուցում կարդաց, թէ բոլոր հայերին պէտք է քշել Միջագետքի հարաւային մասը, որպէսզի այդպիսով Թիւրքիայի հիւսիսային սահմանը մաքրուի հայերից, և նրանց ու Ռուսիայի միջև բնակեցնել Թիւրք ազգաբնակութիւն։

1915 թ. յունիսին այդ ծրագիրը սկսեցին ի կատար ածել։ Հայերին հրամայեցին երեք օրուան ընթացքում դուրս գնալ իրենց բնակավայրերից։ Թէ ուր պիտի գնային և ինչու—ոչ ոք չգիտէր։ Շատերը գիտակցում էին, որ այդտեղ մի ինչ-որ թակարդ կայ և աշխատում էին բողոքել։ Մի քանի տեղ երիտասարդութիւնը զինուած դիմադրութիւն ցոյց տուեց, բայց նա բաւականաչափ կազմակերպուած չէր։ Միայն Վանումն էր, որ ապստամբները կարողացան դիմադրել մինչև ռուս զօրքի հասնելը։

1,200,000 հոգուց բաղկացած մի ժողովրդի գաղթեցնելու ծրագիրը այնքան անմիտ բան էր, որ Էրզրումում տեղական երիտասարդ թիւրքերի կոմիտէն չէր համաձայնում այդ միջոցի գործադրութեանը։ Հայերը կազմում էին ոչ միայն ազգաբնակութեան մեծ մասը ըստ քանակի, այլ և ամենաարդիւնաբերողը ըստ տնտեսականի։ Այն ժամանակ գերմանական հիւպատոսը ըսկսեց իր մօտ կանչել կոմիտէի անդամներին առանձին-առանձին և համոզել նրանց, որ հայերը վտանգաւոր տարր են, որոնց չի կարելի տեղումը թողնել։ Հարուստներին ստիպում էին իրենց փողերը Օտտոմանեան բանկը դնելու, իսկ իրերը Հայոց եկեղեցիներում թողնելու, և այդպէս՝ առանց իրերի և առանց փողի քաղաքի և վիլայէթի երկու հարիւր հազարանոց բնակչութիւնը տեղահան արին։ Այդ մարդկանց մեծ մասը ճանապարհին սպանեցին, մի մասն էլ փախաւ Ռուսաստան։

Հայերի նոյնպիսի բնորոշումը՝ ինչպէս վնասակար տարրի, Փափազեանը անձամբ լսել է գերմանական մի երիտասարդ սպայից, որը Վան էր գնում այնտեղ քրդական հեծելախումբ կազմակերպելու։ Նրանք իրար պատահել են վալու մօտ, և սպան տեսնելով ֆէսով մի պարոն և չը կասկածելով թէ ում հետ գործ ունի, առանց քաշուելու իր տեսութիւնն է արտայայտել դէպի հայերը։

— Նրանք վնասակար և խորամանկ ժողովուրդ են։ Ինչպէս էլ լինի՝ նրանց պէտք է հեռացնել, ասել է սպան։

Այդ սպան Ամերիկայից էր. հայրը—գերմանացի, իսկ մայրը—ֆրանսուհի. գերմանացի կրակոտ հայրենասէրի մէկն էր։

Ամենից պարզ երևում է գերմանական կազմակերպչական ույժի մասնակցութիւը կոտորածի նախամտածուած ծրագրում։ Թիւրքերը անհետևողական ու թեթևամիտ ժողովուրդ են։ Նոյն իսկ յանցագործութեանց մէջ։ Աբդուլ-Համիդի կառավարութիւնը նոյնպէս կոտորածներ էր կազմակերպում։ Հէնց նրան գահընկեց անելուց յետոյ էլ Ադանայում հայկական կոտորած տեղի ունեցաւ, բայց դրանք բոլորը մոլեգին, սանձարձակ բնոյթ էին կրում։

1915 թուի ամառը կոտորածը կատարւում էր պազարին և ըստ որոշ ծրագրի։ Ամբողջ Հայաստանը բաժանուած էր մասերի և ամեն մի մասում կոտորածը իրագործւել է միաժամանակ և մինչև վերջը։

Մուշի վիլայէթում, որը Փափազեանը ամենից լաւ է ճանաչում, մութեսարիֆը իր մօտ է հրաւիրում բոլոր ծերունիներին և առաջարկում գաղթել։ Նրանք հասկանում են յետին միտքը և հրաժարւում։ Այն ժամանակ հաւաքում են 300 երիտասարդ, տանում քաղաքից դուրս և բոլորին էլ հրացանազարկ անում։ Հաւաքում են ծերերին, յայտարարում իբրև պատանդներ և նոյնպէս քաղաքից դուրս այգիներում բոլորին կոտորում։

Մուշ քաղաքում, ուր թիւրքերի արուարձանը գտնւում է քաղաքի վերին մասում, իսկ հայերինը—ներքին, թնդանօթներով ռմբակոծում են հայկական մասը։ Բայց դարձեալ մօտ 6000 կին ու երեխայ են մնում կենդանի։

Նրանց քշում են սրահները, յարդով լցնում և կենդանի-կենդանի այրում։ Այդ էլ նոյնպէս բնաջնջման ծրագրի մասն էր կազմում և ամբողջ Հայաստանում կրկնւում։

Մուշի արգաւանդ և հարուստ տափաստանում գտնուած 98 հայ գիւղեր մատնւում են քիւրդերի թալանին, որոնք լաւ զինուած են լինում գերմանական մաուզէրներով և փամփուշտներով։ Բայց որպէսզի քրդերնը չը թուլացնէին դաժանութիւնը դէպի հարևան հայերը, սոցա ուղարկում էին աւելի հեռաւոր գիւղեր։

Ամեն տեղ էլ սիստեմը նոյնն է լինում։ Նախ երիտասարդներին հեռացնում էին, նրանց կոտորում, յետոյ միայն գիւղի մօտ հրացանազարկ անում ծերերին։ Երիտասարդ կանանց ու աղջիկներին առնում էին իրենց զուարճութեան համար, իսկ պառաւներին, տգեղներին ու երեխաներին քշում էին սրահները և այրում։

Փափազեանը այդ միջոցին մի քանի տասնեակ զինուած հայերի հետ գտնուելիս է լինում բարձունքներում, Սասունի լեռներում։ Ծխի ու մարդկային մսի խանձահոտը հասնում էին նրանց...

— Ի՜նչպէս ես խելագար չեղայ այդ ժամանակ, կամացուկ ասում էր նա, և ես ակամայ աչքերս ցած էի քցում նրա այրուող հայեացքի առաջ։

Մի քանի հազար մարդ կարողանում է ազատուել նրա մօտ լեռները փախչելով։ Մնացեալ տասնեակ հազարաւոր մարդիկ բնաջինջ են լինում տափաստաններում։ Գլխաւորապէս սպանութիւն կատարողները լինում են քիւրդերը։ Թիւրքերը յաճախ համակիր չեն եղել նրանց գազանութիւններին։ Բայց միւսիլման ազգաբնակչութիւնը ափաչկարայ ասում էր, որ գերմանացիք իրենց համաձայնութիւնն են տուել բոլոր հայերի բնաջնջման, բացի կանանցից և 15 տարեկանից փոքր երեխաներից։ Թէպէտ ոչ մի դէպք չի եղել, որ գերմանական հիւպատոսը կամ սպան իրա պաշտպանութեան տակ առած լինի մի երեխայ կամ կին։ Գերմանացիք մինչև վերջն էլ պահպանել են իրենց ճշմարիտ որ սոսկալի դերը։

Կոտորածի այն ընդհանուր ուրուագիծը, որ նկարագրեցին հայ-պատգամաւորները, հաստատում են և բազմաթիւ վկաներ և փաստագրեր։ Առաջ կը բերեմ դրանցից մինը, շատ համեստ, բայց շատ պերճախօս։

Մի թուրք զինուորի՝ Հիւսէյին Սարրի, պատմութիւնն է այդ։ Ծագումով արաբ էր նա, մի զօրամասում դպրագրի պաշտօն էր վարում։ 1915 թ. օգոստոսի 1-ին գերի էր առնուած մերոնց կողմից. Նրան հարցափորձ արինք մեր երիտասարդ դիպլոմատներից մինի ներկայութեամբ, որը լաւ խօսում էր թիւրքերէն։ Ահա թէ ինչ էր պատմում.

«Մօտ երեք ամիս առաջ, Լիսում (8 ժամուայ ոտքի ճանապարհ Մուշից հեռու) գտնուող Մուշի ժանդարմների մի բատալիոն հաւաքեց քաղաքի բոլոր 10 տարեկանից աւել հասակ ունեցող հայ-տղամարդկանց։ Այդպիսով հաւաքելով մօտ 150 մարդ, նրանց ուր-որ տանում են։ Հետևեալ օրը այդ բոլոր հայերին գտան մորթոտուած Լիսից մի ժամուայ ճանապարհ հեռու գտնուած մի սարի տակ. Նոյնը արուել է և շրջակայ գիւղերի բոլոր հայերի վերաբերմամբ։ Տղամարդկանց տանելուց մի քանի օր յետոյ Հուսէյինը ականատես է եղել, թէ ինչպէս թիւրք սոտրին զինուորները բռնաբարելիս են եղել հայ աղջիկներին»։

Ես նկարագրեցի միմիայն ընդհանուր պատկերը, բայց աննչան մասը այն բոլորի, ինչ որ առիթ ունեցայ լսելու։ Անկեղ-

ծօրէն խոստովանում եմ, որ ես քաջութիւն չունեցայ գնալ Էջմիածին և հայի ազգային վշտի վիհը աւելի մօտիկից տեսնելու։ Օգնութիւնն արդէն կարգաւորուած էր. միայն պէտք էր տեսնել և գրի առնել... Բայց երբեմն ոյժերը և ջղերը չեն բաւում դրա համար...

Հայերի հետ ունեցած իմ խօսակցութիւնից յետոյ երիտասարդ թիւրքերը իմ աչքում այլևս այն չէին, ինչ որ առաջ։ Այժմ ես գիտեմ, թէ ինչ կը պատասխանէի Անմեղ Ռիզայի այն հարցին, թէ ազնիւ մարդիկ պէտք է յարգեն նրանց...

Ներկայ պատերազմի զարհուրելի պատմութեան ոչ մի էջը այնքան ամօթալի, այնքան հոգին ընդարմացնող չէ, որչափ այն, ինչ որ տեղի ունեցաւ Հայաստանում։ Եւ այդ էջի վրայ դրոշմուած է Գերմանիայի արիւնոտ թաթը։

## ՆՈՐ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԷ

Figaro-յի 17 մարտի համարում տպուած է հետևեալ հետաքրքրական տեղեկութիւնը.

Մի խումբ ֆրանսուհիներ նորերս հիմնեցին մի կոմիտէ, որի նպատակն է պրոպագանդ մղել Ֆրանսիայում յօգուտ Հայաստանի, աշխատել ծանօթացնել ֆրանսացիներին Հայաստանի, նրա քաղաքակրթութեան և այն հալածանքների հետ, որոնց ենթարկուել և ենթարկւում է հայ ազգը Թիւրքիայում։

Կոմիտէի անդամները Ֆրանսիայում նշանաւոր դիրք ունեցող անձինք են. տիկիններ Պօլ Ադամ, Կարօլինէ Անդրէ, Ժակ Կանդրէ, Բէրգսոն, իշխանուհի Բիբէսկօ, կոմսուհի Լէօն Դէլաբերա, կոմսուհի դէ Հոէյլ, Պօլ Դէշանել, Ժօրժ Լէկոմտ և շատ ուրիշները։

Նորակազմ կոմիտէն յայտնի «Ֆրանս-օտարների բարեկամութիւն» ընկերութեան միջոցով կազմակերպել է մի գրականական և գեղարուեստական հանդէս, որ տեղի է ունեցել այս մարտի 27-ին Պարիզի Սորբոնի համալսարանի մեծ ամֆիթէատրում Պօլ Դէշանելի նախագահութեամբ։ Պօլ Դէշանելը նախագահն է ֆրանսական պառլամենտի։

Պէտք է ենթադրել, որ հանդէսը մեծ յաջողութիւն է ունեցել։

Այդ մասին կը տանք տեղեկութիւն, երբ ստացուեն Պարիզի թերթերը։

Իսկ առայժմ զետեղում ենք «Русск. Слов.»-ի ստացած հեռագիրը այդ հանդէսի մասին։

«Խօսեցին Դէշանել, Անատոլ Ֆրանս, Պէնլևէ։ Բոլոր ճառախօսները իրենց յարգանքի և համակրանքի տուրքն էին տալիս Հայաստանին ոչ միայն նրա կրած աղէտների, այլ և այն տոկունութեան համար, որով նա տանում է այդ աղէտները։ Անատոլ Ֆրանսն ասաց. «Համաձայնութեան յաղթական ժողովուրդները ձեռք կը մեկնեն Հայաստանին և կասեն. «Քոյր, կանգնիր։ Քո տանջանքները վերջացան և այսուհետև դու ազատ ես ապրելու քո հոգու և հաւատի թելադրանքների համաձայն»։

# Գեղարուեստ

## ԵՐԱԺՇՏԱԳԷՏ Ա. Ա. ՍՊԷՆԴԻԱՐԵԱՆ

Պետրոգրադի և Ռուսաստանի մեծ քաղաքների հասարակութեան մէջ երաժշտագէտ Ա. Ա. Սպէնդիարեանը վաղուց ստացած է տաղանդաւոր երաժշտի հռչակը շնորհիւ իր ընտիր և նուրբ կոմպոզիցիաների։ Նա յայտնի է և Եւրոպայի երաժշտական աշխարհում. Նրա «Երեք արմաւենի» քանիցս կատարուել է Բեռլինի օպէրային թատրոնում և մեծ գովասանքների արժանացել։

Թիֆլիսի հասարակութեան միայն ապրիլ 27-ին առաջին անգամ վիճակուեց ներկայ լինել պ. Սպենդիարեանի համերգին, որ նա տուեց Արտիստական թատրոնում։

Ալէքսանդր Աֆանասեան Սպէնդիարեանը ծնուել է 20-ին նոյեմբերի 1871 թ. Տաւրիկեան նահանգի Կախովկա գիւղում։ Բարձրագոյն կրթութիւն ստացել է Մոսկուայի համալսարանում և աւարտել է իրաւաբանական բաժինը։ Երաժշտութեան տեսական մասը ուսումնասիրել է պ. Սպէնդիարեանը ամենից առաջ ուսանող ժամանակ պ. Ն. Ս. Կլէնովսկու մօտ, իսկ համալսարանը աւարտելուց յետոյ՝ Ն. Ա. Ռիմսկի Կորսակովի մօտ, որի ղեկավարութեան տակ և վերջացրեց իր երաժշտական կրթութիւնը 1900 թ.։

Նոյն տարին Ա. Ա. Սպէնդիարեանը յօրինեց իր առաջին շարադրութիւնը «Համերգային նախերգանք» օրկէստրի համար, որ կատարուեց առաջին անգամ յունիսին 1900 թ. Պետրոգրադ Պաւլովսկում։ Իր հետագայ գործունէութեան մէջ նա արտայայտեց իր առանձին հակումը արևելեան երաժշտութեան ստեղծագործութեան։ Նրա ամենամեծ երաժշտական աշխատութիւնը «Երեք արմաւենի»-ն է։ Նա իր ծննդավայր Ղրիմում հետաքրքրուեց նաև Ղրիմի թուրքերի ժողովրդական երգերով և մի շարք շարադրութիւններում տուեց նրանց գեղարուեստական ձև։ Պ. Սպէնդիարեանի վերջին երաժշտական երկերը «Հայ կամաւորին», «Կոզակների պատերազմական քայլերգը» և համերգական մեղեդին «Առ Հայաստան»—արդիւնք են հոգեկան զգացումների, որոնք առաջ բերին նրա հոգու մէջ արդի պատերազմական անցքերը և իր հայրենի Հայաստանի տառապանքները։

Պ. Ա. Սպէնդիարեանը իր երեք երաժշտական շարադրութիւնների համար—որոնք են—«Երեք արմաւենի», «Բէդ-քարողիչ» և «Եղանակ դէկլամացիա («Երաժշտական ճառախօսութիւն»), «Մենք կը հանգստանանք» (խօսքեր Չէխովի) Գլինկայի անուան մրցանակներին են արժանացել։

Պ. Սպէնդիարեանի համերգը բաղկացած էր երկու բաժանմունքից և ամբողջ ծրագիրը կազմուած էր հեղինակի ընտիր կոմպոզիցիաներից։ Ծրագրի բոլոր համարները կատարուեցին արտասովոր յաջողութեամբ, մանաւանդ «Երեք Արմաւենի»-ն և «Ղրիմի էսկիզները» աննման գեղեցիկ էին։

Բոլորը լսում էին լարուած ուշադրութեամբ և մեծ հիացմունքով։

Հրճուած հասարակութիւնը ովացիաներ արաւ նրան և շատ պսակներ տուեց։

Օտարազգիներ հասարակութեան մէջ շատ քիչ էին, ներկայ եղողները համարեա միայն հայեր էին։ Այս տեսակ երևոյթներ Թիֆլիսում դժբախտաբար յաճախ են լինում։ Հետևեալ օրը պ. Սպէնդիարեանի յարգողները նրա պատուին բանկէտ տուին։

Միրոզ

# Գրականութիւն

## ՓԻՂ ԵՒ ԱՌԻՒԾ

(Պատմուածքներ)

I

Ներեցէք նախ մի քանի խօսք։ Մի յառաջաբան, որ թէև երկար էլ լինի հետագայ պատմուածքներից, կարևոր է սակայն որոշ բացատրութիւնների համար։

Առաջին պատմուածքը, երկու տարի սրանից առաջ, երբ Կ. Պոլիս էի, գտայ ես օտարազգի մի թերթի մէջ՝ առանց ստորագրութեան։ Չեմ յիշում ֆրանսերէն թերթի, թէ՞ ռուսերէն։

Երկրորդը պատմեց մի գաւառացի ծանօթ ուսուցիչ, որ այժմ գուցէ և կենդանի չի ազատուել տեղի ունեցող կոտորածներից։

Ո՛րտեղից էր լսել պատմութիւնը—չըգիտէր։ Գուցէ ժողովրդից։ Գուցէ և ինքն էր հնարել։ Չը կարողացայ ստուգել։

Առաջինը, յամենայն դէպս, ձեռքս ընկաւ այն օրերին, երբ դեռ համաշխարհային պատերազմը չէր բռնկել և հայ մտքերը զբաղուած էին միմիայն Հայաստանի բարենորոգութիւնների խնդրով։

Կային ոչ միայն «յուսատու նշաններով» ոգեւորուող մարդիկ, այլ նոյն իսկ անբուժելի երազատեսներ ու մարգարէներ։

Բնական էր այդ և բաւական սրտաշարժ։

Այնքան երկարատև էին եղել Թիւրքահայի տանջանքներն ու յուսախաբութիւնները, որ այժմ, երբ լրջօրէն ձեռնարկուել էին օսմանցու ձեռքից կորզել հայ նահանգների բարենորոգութեան որոշումը—մէկից աւելի մարդիկ, յոռետեսներն անգամ, գտնում էին, որ Հոֆն ու Վէստէնէնգը, իրենց խոստումներով ու ոստիկանական չներովը, դրախտի պիտի փոխէին վեց նահանգներն ու պիտի գտնէին երկիրը աւերող յանցապարտներին։

Հոֆն էլ Պոլիս էր, Վէստէնէնգն էլ։ Ցիլինդրաւոր երկու պարոններ, որոնցից մէկը «Թոքաթլեանի» հիւրանոցի կողքին վանդակներով ի տես էր դրել Հայաստանի աւազակները որոնող-գտնող ոստիկանական չներին (Եւրոպայից բերած յատկապէս), իսկ միւսը այցելութիւններ էր շռայլում ամենքին—Պատրիարք, նախարար... և լիառատ յոյսեր բաշխում։

Իսկ թէ մութի մէջ ինչե՛ր էին նիւթւում հայկական նահանգների ու հայերի դէմ, և թէ այդ ամենը ինչպէ՛ս պիտի օդը ցնդէին սապոնի պղպջակների պէս ու տեղում թողնէին արեան լճեր և դիակների շեղջակոյտեր—այդ մասին ոչ ոք չէր կարող իմանալ, նոյն իսկ ենթադրութիւններ անել։

Եւ սակայն սպառնալից նշանները չէին, որ պակասում էին այդ օրերում։ Ճշմարիտ է, փոքրիկ միջնադէպերի ու արկածների երևոյթն ունէին դրանք, բայց այնքան յաճախակի էին տեղի ունենում, որ շատերի մէջ շուարումն ու անձկութիւն էին առաջ բերում։

Ո՛չ միայն ես և իմ շատ ծանօթները, այլ մի քանի լրագիրներն իսկ սկսել էին վախ զգալ ստացուող լուրերից և տեղի ունեցող դէպքերից թէ գաւառներում և թէ մայրաքաղաքում։

Նախ և առաջ այն նշանաւոր շինծու նամակը, որ իբր թէ գրել էին 20—30 «հայ երեւելիներ» և ուղարկել Թիւրք լրագրին։ Այդ գրութիւնով «հայերը» յայտարարում էին, թէ իրենք դէմ էին օտարների միջամտութեան «Օսմանցիական գործերի» մէջ։ Փառք Աստուծոյ, ինչ էր եղել որ. մի թէ օսմանցոց երկրի մէջ բարենորոգութիւններ մտցնելու համար պէտք կար օտար ձեռքերի։ Արդէն իսկ կառավարութիւնը ձեռնարկել էր բարենորոգչական օրէնսդրութեան՝ ընդհանուր երկրի մէջ։ Ի՞նչ հարկ, ապացէք խընդրեմ, գտնելու վեց նահանգները և յանձնելու օտար «քննիչների»...

Եւ այդ ոգով էլի մի շարք ժխտական ու յանդիմանական դիմումներ այն «դաւաճաններին», որոնք փորում են օսմանցիութեան հիմքը» և դրանով էլ գրգռում ժողովրդի «արդար զայրոյթը»։

Ստուգուեց, որ նամակը շինծու էր ու թխուած «թիւրք օջախներում»։ Ու երբ հայ թերթերը «յանդգնեցին» յայտարարել այդ, դրան իսկոյն հետեւեցին սպառնալից գրութիւններ՝ ուղղուած լրագիրներին և մինչև իսկ հայոց պատրիարքին։ Բաւական թող լինէր հայերի արածները. Օտար, թշնամի, օսմանցիութեան հիմքերը խախտել կամեցող ձեռքերը բերել և նրանց յանձնել պետութեան անելիքը—դաւաճանութիւն էր։ Թող ետ վերցնէին իրենց պահանջներն ու բարբաջանքները բարենորոգումների և քննիչների մասին, ապա թէ ոչ...

Ապա թէ ոչ, յիրաւի, Թիւրք ժողովուրդը կունենար, կը գտնէր միջոց այնպէս խստօրէն պատժելու դաւաճաններին, որ երբէք չը մոռանային...

Ու հրդեհները Տրապիզոն, Տիգրանակերտ, Թոքաթ, իբր ազդարարութիւն և նախազգուշութիւն, բաշխուեցին բարենորոգութիւն պահանջող հայերին։ Յաջորդական հրդեհումներ հայ դպրոցի, հայկական շուկայի և հայոց թաղերի։ Ահա ձեզ, դաւաճաններ, իմացէք թէ ինչե՛ր պիտի անենք ձեզ համար, եթէ ետ չը վերցնէք ձեր պահանջները։

Ամենից աւելի յատկարար նշանների մասին լուրեր ստացւում էին մասնաւոր նամակներով։ Մէկ-մէկ յաջողւում էր տպագրել այդպիսի լուրերից, բայց մեծ մասամբ արգելւում էր։

Ստացուող լուրերն եւ, թէև աննշան միջնադէպերի երևոյթն ունէին, սակայն նշանակալից էին և շշմեցնող։

Պուրսայում, օրինակ, Թիւրք երիտասարդները և Պոլսից այնտեղ պտոյտի եկած թիւրք ուսանողները օրը ցերեկով, համարձակօրէն մտնում էին հայերի խանութներին և քարերով փշրում ապակիները։ Յետոյ, կարմիր և սև ներկով ջնջում էին հայերէն ու օտար լեզուով վերտառութիւն կամ յայտարարութիւն և կողքին աւելացնում—«պահանջւում է միմիայն թիւրքերէն գրել»։

Այդպիսի բան տեղի ունեցաւ մայրաքաղաքումն էլ, գըլխաւոր փողոցի շատ յայտարարութիւնների և վերտառութիւնների հետ։ Շատերը վախեցած՝ ամեն բան փոխեցին թիւրքերէնի։ Կառավարութիւնը ոչ միջամտեց և ոչ որևէ ձեռնարկութիւնով արգելք եղաւ։ Երբ գանգատեցին—ծիծաղեց միայն։

Այնուհետև, Պուրսայում դարձեալ, ինչպէս գրում էին, թիւրք ուսուցչանոցի ուսանողները հանդիպելով հայ ուսուցիչների՝ հայհոյել էին նախ նրանց, յետոյ էլ սպառնացել ծեծելու, եթէ եւրոպական գլխարկները չը փոխէին ֆէսերի։

Եւ այդպէս միջոցների դիմողները շուտով ընթացաւարտ՝ ուսուցչութեան պիտի ելնէին դէպի գաւառները...

Այդ և նման շատ ուրիշ «դիպուածներ» սկսեցին այնքան յաճախ կրկնուել, որ հայ թերթերը, երկիւղով լի, ահազանգը հընչեցնելու կէտին հասան։ Այնուամենայնիւ դեռ հայ ազգի փրկութեան յոյսերն ու երազները չէին դադարում ոգեւորելու շատերին, որովհետև Հոֆն ու Վէստէնէնգը պատրաստւում էին մեկնելու դէպի Հայաստան։

Հոգ չէր, ի հարկէ, եթէ մի քիչ շատ էին այցելութիւնները, իսկ կառավարութիւնը չէր կարողանում վերջացնել նրանց տալիք իր հրահանգները։ Մի քիչ էլ գործը երկարաձգում էր երկրորդական պաշտօնեաների ընտրութիւնը...

—

Այդ օրերին էր ահա, որ փերի պատմութիւնը կարդացել էի ես մի թերթում։ Կարդացել էի և անցել։ Ճշմարիտ է, թողել էր տպաւորութիւն, սակայն օրուայ նորութիւնները այնքան գահավիժօրէն էին յաջորդել իրար և մտքեր զբաղեցնող հարցերը այնպէ՛ս արագ էին փոփոխութեան ենթարկուել, որ երէկուայ եղածները թւում էր թէ երէկ չէր, այլ մի տարի և շատ աւելի առաջ. որ երէկուայ տեսածն ու լսածը արդէն հնացել էր ու նսեմացել...

Յուլիս ամսին պայթեց համաշխարհային փոթորիկը։ Թիւրքիան անմտօրէն ընկաւ նրա յորձանքի մէջ։ Ընդհանուր զօրաշարժը մի երկու օրուայ ընթացքում ջնջեց ու հանեց հրապարակից ամեն այլ հարց։

Ուղղակի մոռացութեան ու հնութեան անցան հայկական հարցն էլ, հայկական վեց նահանգների բարենորոգութեան որոշումներն էլ։

Հոֆ ու Վէստէնէնգ, ամեն այլ քննիչ ու քննութիւն ետ առնուեցին, ետ կանչուեցին, դադարեցրին ու ջնջեցին։

— «Թողէք ամեն յոյս, ո՛վ դուք, որ մտնում էք այստեղ»։ Դանտէի այդ խօսքերը գրուեցին այլեւս հայկական հարցի ճակատին՝ Թիւրքիայում։

Աւելացրէք դրա վրայ նաև այն, որ սպառնալից ձայները, առհասարակ քրիստոնեաների, բայց մանաւանդ հայերի վերաբերմամբ, մեծ չափեր էին ընդունում և ընդհանրանում։ Գաւառներից ահաբեկումների լուրեր էին ստացւում, իսկ մայրաքաղա-

քում ոչնչութեան էին մատնում պատրիարքի բոլոր դիմումներն ու բողոքները։

Յայտնի կերպով Թիւրքերը սպառնում էին հայկական կոտորած սարքել այն տեղերում, ուր ոտք կը կոխէր յատկապէս այն քրիստոնեայ պետութիւնը, որ օսմանցիներին մինչան անհանգստութիւն էր պատճառել հայկական հարցի համար։

Իսկ որ Թիւրքիան զինւում էր նրա դէմ—այդ ոչ ոքի համար գաղտնիք չէր։

Եւ ահա դարձեալ պիտի սկսուէին սարսափի օրերը հայ նահանգների մէջ, դարձեալ արիւն ու դիակներ, դարձեալ հայը տեղահան արուած՝ աստանդական ու մազապուրծ՝ ընկնելու էր աշխարհից-աշխարհ, թողնելու էր իր հողն ու տունը արիւնի և հրդեհի մէջ, առնելու էր իր կոշտ գաւազանը և ձեռք պարզելու իջնէր Կովկասի փողոցներում։

Դարձեալ։ Առասպելական թափառող հրէայի պէս նորից հանգստանալու օր չէին տալիս ու նորից վեր նետելով իր տեղից՝ գոչում էին սպառնագին.

— Քալէ...

Մինչև ե՞րբ, տէր, մինչև ո՞ր սերունդը այսպէս տաժանակիր թափառումներ արիւնի և գերեզմանների միջով, ծխացող աւերակների և փլուզման փոշիների մէջ յոգնած, տանջուած և յուսաթափ...

Մինչև ե՞րբ...

(Կը շարունակուի) Վ. Փափազեան

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



## ՓՆՏՌՈՒՄ ԵՆ

կորած փախստական երեխայ

**ԱՀԱՐՈՆ ՅԱԿՈԲԵԱՆՑ**

Վանի շրջանից, Հայասէոր գաւառի Աթանանց գիւղացի, 10 տարեկան, անգրագէտ։ Ազգականները նրան կորցրել են անցեալ ամառ, մեծ գաղթի ժամանակ։ Փնտռում է հօրեղբայր Մովսէս Մուրադեանը։ Տեղեկութիւն հաղորդել «Համբաւաբեր»ի խմբագրութեան։

Մալազկերտի շրջանի Ռստամ-գեադուկցի Մանուկ Սահակեանը փնտռում է իւր կին Ազրութին 50 տ., եղբօրորդի Մկրտչին 37 տ., սորա կին Գուլլի 35 տ., սոցա որդիք Աբրահամ-խուլ և Թլուատ-8 տ., Գասպար 6 տ. Նարգիզ-3 տ.։ Հասցէն, Տիֆլիս Ընկ. գրասենեակ։ 1—1

## ԿՈՐՍՈՒԱԾ ՓԱԽՍՏԱԿԱՆ ԵՐԵԽԱՅ

Վահան—6 տարեկան, ծանրալեզու, շեկահեր ու կլորադէմ։ Կորել է մեծ նահանջի ժամանակ Ուչքիլիսէի մօտ, մօր անունն է Ազնիւ։ Խնդրում են յայտնել Ճատկրան գիւղի (Երևանի շրջան) գաղթականներին խնամող Կոստանդին Տէր-Յարութիւնեանցին։ 2—1



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1 Дозволено военнной цензурой

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 15

# „ՀԱՄԲԱՎԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Կ. Հ. Բ. Ընկ. Երևանի ճիւղի որբանոցի*

*15 փետր. 1916 թ.*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Մնաց. ծնող / մայր թէ հայր | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Առաքելեան Սիաթեյյա | Շորաւ | 6 | որբ | | ոչ | |
| 2 | » Խանում | » | 7 | » | | » | |
| 3 | » Արմենակ | » | 10 | » | | » | |
| 4 | Գէորգեան Մարիամ | Խաստուր | 13 | » | | » | |
| 5 | » Հայկանոյշ | » | 9 | » | | » | |
| 6 | Թորոսեան Սաթենիկ | Խոյ | 11 | ունի | | » | |
| 7 | Խաչատրեան Սարգիս | » | 8 | որբ | | » | |
| 8 | Խանջեան Արաքս | Վան | 4 | » | | » | |
| 9 | Կոնդակչեան Երուանդուհի | » | 17 | մայր | Երևան | այո | |
| 10 | » Արաքսի | » | 13 | » | » | » | |
| 11 | » Վարսենիկ | » | 12 | » | » | » | |
| 12 | » Քարմիլէ | » | 8 | » | » | » | |
| 13 | » Ազատի | » | 5 | » | » | ոչ | |
| 14 | Կարապետեան Հայաստան | — | 6 | որբ | | » | |
| 15 | Ղուրուչեան Թաղյան | Հազարակ | 9 | » | | » | |
| 16 | Մուրադեան Սաֆար | Հասպստան | 10 | » | | » | |
| 17 | Մարգարեան Թովմաս | Վան | 13 | մայր | Երևան | այո | |
| 18 | » Արծրունի | » | 8 | » | » | ոչ | |
| 19 | » Գուրգէն | » | 7 | » | » | » | |
| 20 | Մանուկեան Քարմիլէ | » | 12 | որբ | | այո | |
| 21 | » Ամալիա | » | 8 | » | | » | |
| 22 | » Արշալոյս | » | 5 | » | | » | |
| 23 | Յակոբեան Նազօ | Խաչլու | 4 | հայր | Կամաւոր | ոչ | |
| 24 | » Ալմաստ | » | 7 | » | » | » | |
| 25 | Պարգևեան Վարսենիկ | Վան | 8 | որբ | | » | |
| 26 | » Արաքսի | » | 5 | » | | » | |
| 27 | Տէր-Թադէոսեան Վահան | Ալաշկերտ | 12 | » | | այո | |
| 28 | Օհանեան Սաթենիկ | Սալմաստ | 8 | » | | ոչ | |
| 29 | Ժենիա | Վան | 5 | » | | » | |
| 30 | Լիւբա | | 5 | | | » | |

# Անուանացուցակ փախստ. որբ. երեխաների

«Եղբայրակ. Օգնութ.» Երևանի I որբանոցի

15 փետր. 1916

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աղայեան Աստղիկ | Վան | 13 | որբ | | ոչ | |
| 2 | Աղգաշեան Գառնիկ | » | 7 | հայր | Երևան | այո | |
| 3 | » Վարդուհի | » | 13 | » | » | » | |
| 4 | Ալէքսանդրեան Արփենիկ | » | 13 | որբ | | » | |
| 5 | Առաքելեան Իսկուհի | Մոկս | 10 | » | | ոչ | |
| 6 | Անդրէասեան Զուարթ | Սղերթ | 4 | մայր | Երևան | » | |
| 7 | Աթանասեան Մայրանուշ | Վան | 12 | որբ | | այո | |
| 8 | Այվազեան Սիմոն (Ծերուն) | » | 4 | հայր | Երևան | ոչ | |
| 9 | Բարջոյեան Անտիկա | Բեղրան | 13 | որբ | | » | |
| 10 | Բերբերեան Վանուհի | Վան | 15 | մայր | Երևան | | |
| 11 | Գասպարեան Վանանոյշ | » | 13 | որբ | | այո | |
| 12 | Գրիգորեան Աննման | Ար-Սահակ. | 14 | » | | ոչ | |
| 13 | Դաւօեան Մարիամ | Նոր-գիւղ | 14 | » | | » | |
| 14 | Դիլանեան Աշխէն | Վան | 9 | » | | » | |
| 15 | Դերձունեան Արմենուհի | » | 4 | » | | » | |
| 16 | Եղիկեան Հռիփսիմէ | » | 14 | որբ | | » | |
| 17 | Զաքարեան Եղիսաբեթ | Գևրաւաղ | 14 | » | | » | |
| 18 | Թելլէեան Արմենուհի | Վան | 13 | հայր | Երևան | » | |
| 19 | Թովմասեան Բերսաբէ | » | 15 | որբ | | այո | |
| 20 | Խանիկեան Աստղիկ | » | 12 | » | | » | |
| 21 | » Աւետիս | » | 8 | » | | ոչ | |
| 22 | » Իսկուհի | » | 14 | » | | այո | Հիւանդանոց |
| 23 | » Վարսենիկ | » | 10 | » | | » | |
| 24 | Խաստիկեան Աստինէ | » | 13 | հայր | Երևան | » | |
| 25 | » Գուրգէն | » | 7 | » | » | » | |
| 26 | » Մայրանուշ | » | 13 | » | » | » | Հիւանդանոցում |
| 27 | Խաչիկեան Եղիսաբեթ | Լամզկերտ | 17 | որբ | | ոչ | |
| 28 | Խաչատրեան Խումար | Բաշտօք | 11 | մայր | | այո | |
| 29 | Խանամերեան Մարիամ | Ղարաքիլիսէ | 12 | » | Երևան | ոչ | |
| 30 | Կարապետեան Թանգիկ | Կարճկան | 13 | » | » | » | |
| 31 | » Հայկանոյշ | Բաղդակ | 13 | որբ | | այո | Հիւանդանոց |
| 32 | Հայրապետեան Զիչօ | Գիւզկ | 12 | » | | ոչ | |
| 33 | Ջիթաւեան Վարդուհի | Վան | 10 | հայր | Վան | այո | |
| 34 | » Վանուհի | » | 8 | » | » | » | |
| 35 | Ղամբարեան Ազաւնի | » | 11 | մայր | Երևան | » | |
| 36 | Ղարիբեան Բարսեղ | Փրխուս | 13 | որբ | | ոչ | Կոյր է |
| 37 | Ղազարեան Հռիփսիմէ | Ցարխ | 11 | » | | այո | |
| 38 | Մարտիրոսեան Մարիամ | Վան | 12 | » | | ոչ | |
| 39 | » Սիրվարդ | » | 15 | » | | այո | |
| 40 | » Սրբուհի | » | 12 | » | | » | |
| 41 | Մարկոսեան Մաքրուհի | Հանդստան | 14 | » | | ոչ | |
| 42 | Մարգարեան Նուարդ | Կոփ | 10 | » | | այո | |
| 43 | Մելքոնեան Մարինէ | Ալճաւազ | 13 | » | | ոչ | |
| 44 | » Զիչօ | Հասպանց | 8 | » | | » | |
| 45 | Միրզոյեան Լուսիկ | Ալճաւազ | 8 | մայր | | » | |
| 46 | » Ոսկի | » | 6 | » | | » | |
| 47 | » Մանիշակ | Շատախ | 10 | որբ | | այո | |
| 48 | Միքայէլեան Սաթենիկ | Սուրար | 15 | » | | ոչ | |
| 49 | Մրգէյեան Սիրուն | Աւանց | 11 | » | | » | |
| 50 | Մխիթարեան Շուշանիկ | Նորգիւղ | 11 | » | | » | |
| 51 | Մուրադեան Մարիամ | Վան | 12 | » | | այո | |
| 52 | » Մաշիկ | Խարսաթ | 13 | » | | ոչ | |
| 53 | Մկրտչեան Սիրուն | Վան | 16 | » | | այո | |
| 54 | Մուխսեան Մարիամ | Վպարկերտ | 13 | » | | ոչ | |
| 55 | Մուխսի-Աղօեան Սոնիա | Խարականց | 12 | » | | » | |
| 56 | Յարութիւնեան Այնիւ | Երեմեր | 13 | » | | » | |
| 57 | Յովանէսեան Վազգէն | Վան | 7 | ունի | Երևան | » | |
| 58 | » Վարսենիկ | » | 5 | » | » | » | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 59 | Շատախցեան Աստղիկ | » | 12 | մայր | » | այո | |
| 60 | » Շուշանիկ | Վան | 11 | մայր | Երևան | ոչ | |
| 61 | Շահինեան Անոյշ | » | 12 | որբ | | այո | |
| 62 | Շերակեան Արաքսի | » | 12 | » | | „ | |
| 63 | Պապիկեան Աղաւնի | » | 11 | » | | „ | |
| 64 | » Թագուհի | » | 15 | » | | „ | |
| 65 | » Սրբուհի | » | 14 | » | | „ | |
| 66 | » Վանուհի | » | 12 | ունի | Երևան | „ | |
| 67 | » Վարդուհի | » | 10 | » | » | „ | |
| 68 | Պետրոսեան Մարգարիտ | Ոսկէբագ | 12 | որբ | | ոչ | Հիւանդանոց |
| 69 | Սարոնջանեան Բուրաստան | Ականց | 5 | մայր | Երևան | „ | |
| 70 | » Նազարէթ | » | 9 | » | » | այո | |
| 71 | » Օգսէն | » | 8 | » | » | „ | |
| 72 | Սահակեան Բերկրուհի | Թագա | 4 | ունի | » | ոչ | |
| 73 | Սարգսեան Վարդանոյշ | Նորգիւղ | 9 | որբ | | „ | |
| 74 | Սիմոնեան Աղաւնի | Մոխրաբերդ | 15 | » | | „ | |
| 75 | Սիփլեան Սիրուն | Վան | 11 | » | | այո | |
| 76 | Վարդանեան Աստղիկ | Շահպաղի | 14 | » | | ոչ | |
| 77 | » Հայկանոյշ | Արճէշ | 10 | » | | „ | |
| 78 | » Մարիամ | Թրապար | 11 | » | | „ | |
| 79 | » Մուշեղ | » | 9 | » | | „ | |
| 80 | » Քելմիշ | » | 12 | » | | „ | |
| 81 | Տաճիկ-Աճեմեան Մաքրուհի | Վան | 12 | » | | այո | |
| 82 | Տեղտրիկեան Ամիլէ | » | 10 | ունի | Երևան | ոչ | } Երկորեակներ |
| 83 | » Քամիլէ | » | 10 | » | » | այո | |
| 84 | Տէր-Մկրտչեան Ժեննիէւ | Արճէշ | 9 | որբ | | „ | Հիւանդանոց |
| 85 | Տէր-Բարսեղեան Վանուհի | Վան | 10 | մայր | Երևան | „ | |
| 86 | Փանոսեան Արշալոյս | » | 11 | » | » | ոչ | |
| 87 | Քարտաշեան Սիրուն | » | 12 | որբ | | այո | |
| 88 | Օտեան Վարդուհի | » | 13 | » | | „ | |

# Անուանացուցակ փախստական որբ երեխաների

## «Եղբայրակ. Օգնութ» Երեւանի II որբանոցի

15 փետր. 1916

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Անդրէասեան Ֆլորա | Մուշ | 2 | որբ | | ոչ |
| 2 | Աղիզեան Աղիզ | Շատախ | 9 | հայր | | " |
| 3 | Աւագեան Հրանտ | Կուռուպաշ | 4 | որբ | | " |
| 4 | Սեթախեան Հմայեակ | Վան | 9 | » | | " |
| 5 | Գրիգորեան Սիրարփի | » | 12 | » | | այո |
| 6 | » Քարմիլէ | » | 6 | » | | ոչ |
| 7 | » Մաքրուհի | Հայոց Ձոր | 5 | » | | " |
| 8 | » Կարապետ | Վան | 5 | » | | " |
| 9 | Գազարեան Վարդգէս | Երեմեր | 7 | հայր | | " |
| 10 | » Արիստով | » | 4 | որբ | | " |
| 11 | Դաւթեան Միհրան | Մաշտակ | 4 | որբ | | " |
| 12 | » Սարգիս | » | 7 | » | | " |
| 13 | Երամեան Լուսաբեր | Աղկես | 5 | » | | " |
| 14 | » Ճոչագա | » | 6 | » | | " |
| 15 | Զաքարեան Մասիս | Շատախ | 7 | ունի | | " |
| 16 | Լապտուրակեան Ռուբէն | Մուշ | 16 | մայր | | այո |
| 17 | Խէրանեան Նազիկ | Վան | 8 | » | | ոչ |
| 18 | » Գուրգէն | » | 7 | » | | ոչ |
| 19 | Խաչատրեան » | » | 6 | » | | այո |
| 20 | Հայրիկեան Համբարձում | » | 4 | որբ | | ոչ |
| 21 | Մանուկեան Նշան | Աթանա | 8 | » | | " |
| 22 | Մանասեան Ազատ | Բրէս | 7 | » | | " |
| 23 | Մարգարեան Ազօ | Վան | 5 | » | | " |
| 24 | » Կարապետ | » | 8 | » | | " |
| 25 | » Մկրտիչ | » | 5 | » | | " |
| 26 | » Յովհաննէս | » | 4 | » | | " |
| 27 | Մելքոնեան Հայկանոյշ | Արճէշ | 7 | » | | " |
| 28 | Մկրտչեան Սիրանոյշ | Վան | 13 | մայր | | այո |
| 29 | » Եալտուզ | Գոչար | 7 | որբ | | ոչ |
| 30 | » Սիրվարդ | Շահպաչի | 6 | հայր | | " |
| 31 | Յակոբեան Կօլէ | Մարեաման | 7 | որբ | | " |
| 32 | » Վարդան | Ծվստան | 8 | » | | " |
| 33 | Յովհաննիսեան Գառնիկ | Կողպան | 5 | » | | " |
| 34 | Նշանեան Վալենտին | Շահպազ | 8 | հայր | | " |
| 35 | » Ազատ | Վան | 6 | որբ | | " |
| 36 | Շարանբէյեան Անժել | » | 14 | մայր | | " |
| 37 | » Երուանդ | » | 8 | » | | " |
| 38 | » Բաբկէն | » | 5 | » | | " |
| 39 | Շալճեան Կայսերուհի | » | 7 | հայր | | " |
| 40 | Պալասանեան Մաքրուհի | Բերդակ | 7 | որբ | | " |
| 41 | Պետրոսեան Սարօ | Շատախ | 7 | մայր | | " |
| 42 | Սարգսեան Տիգրան | Էրզրում | 7 | որբ | | " |
| 43 | Սեդրակեան Յովհաննէս | Ալճաւազ | 5 | » | | " |
| 44 | Սիմոնեան Սիրուն | Վան | 8 | » | | " |
| 45 | Սրուաստեան Շուշանիկ | » | 15 | մայր | | այո |
| 46 | Վարդապետեան Շամրիկ | Աւանց | 7 | որբ | | ոչ |
| 47 | » Մկրտիչ | Վան | 5 | » | | " |
| 48 | Տէր-Աւօեան Մայրիկ | » | 9 | մայր | | " |
| 49 | Տէր-Կարապետեան Քարմիլէ | » | 5 | որբ | | " |
| 50 | Փութոյեան Թարկիլ | Ալճաւազ | 8 | » | | " |
| 51 | Քիրիչչեան Հայկանոյշ | Վան | 12 | » | | այո |
| 52 | Տէր-Յովհաննիսեան Աղասի | » | 5 | » | | ոչ |
| 53 | Նշան | Աթանա | 4 | » | | " |